

# Ստեղծագործում են աշխարհի

## Ձյունիկը

Ափիս մեջ փոքրիկ մի կաթիլ ընկավ
Եվ կամաց կանչեց մտերիմի պես.
— Բարև՛ քեզ, Լե՛նա, ճանաչեցի՞ր ինձ:
— Բարև՛, ձյա՛ն փաթիլ,— շշնջացի ես:

ԼԵՆԱ ԿՈՊՏԵԼԻՆԱ
ք. Մոսկվա, 4-րդ դաս.



ՄԱՆԻ ԱՖՐԻԿՅԱՆ
Կոջոյանի անվան դպր. 3-րդ դաս.



ՀԵՐՄԱՆ ԵՆՍ, 12 տ., ԳԴՀ

## Մեր տունդրան

Տունդրայում ձյուն կա ճերմակ
Ու կա ճերմակ լռություն,
Թե լինի շուն ու սահնակ,
Կսլանամ ես իսկույն:
Շուն չլինի, դե, ոչինչ,
Եղջերուներ կլծեմ,
Կտեսնեք, որ ոչ ոք ինձ
Նման դեռ չի սլացել:
Հեռվից ինձ չեք ճկատի,
Ի՞նչ, կարծում եք կկորչե՞մ.
Անդերսենի հեքիաթի
Մանչուկ Կայն եմ, Լենան չեմ:

ԼԵՆԱ ՉԻՍՏՅԱԿՈՎԱ
Թարգմ. ՄԱՔՍԻՄ ՈՍԿԱՆՅԱՆԻ

* * *

Կանգնել, նայում եմ
Պատուհանից դուրս,
Ուր փաթիլներն են
Իջնում սուսուփուս,
Ձյունն ասես կարապ
Իջնում երկնքից,
Ճերմակ թևերով
Ողջունում է ինձ:

ԼԵՆԱ ԿԱՐՊԼ
ք. Հյուսիսային
Պեչորա, 5-րդ դաս.



ԼԵՆԱ ՍՈՒԽԱՐԵՎԱ, ք. Լենինգրադ

# երեխաները

## Գետակը

Զնգուն գետակը,
Սիրուն գետակը
Գլորվում է ցած,
Գլորվում է ցած:

Նրա միջով միշտ
Երկինքն է հոսում,
Ափին ծառերն են
Շշուկով խոսում:

Զնգուն գետակը,
Սիրուն գետակը
Գլորվում է ցած
Անվերջ հիացած...

ԱՐՄԻՆԵ ԱՂԱՋԱՆՅԱՆ
*Երևանի № 116 դպր., 5-րդ դաս.*



ՍԵՐՈԲ ՆԱԶԱՐՅԱՆ,
[illegible] դպր. 4-րդ դաս.

## Գիշեր

Երկնակամարի սև ֆոնի վրա
Մեկը փայլփլուն աստղիկներ ցանեց,
Ամպի մի փոքրիկ բուլայի տակից
Լուսինն իր ոսկե գլխիկը հանեց:

Մեղմ սվսվացին ծառերը թախծոտ,
Իրար գրկեցին, անուշ քուն մտան,
Եվ շուրջը լռեց, լռեց ամեն ինչ,
Որ երազները անվախ արթնանան:

ԱՍՅԱ ԲԱՍԵՆՑՅԱՆ
*Երևանի № 148 դպր., 9-րդ դաս.*

# ՔՍԱՆ ՏԱՐԻ ԱՆՑ

1945 թվականին ֆաշիստական Գերմանիայի կապիտուլյացիայով ավարտվեց մարդկության պատմության մեջ ամենասոսկալի պատերազմը: Պատերազմում զոհվեց ավելի քան 50 միլիոն մարդ, որից 13 միլիոնը երեխաներ էին... Սակայն պատերազմից հետո էլ ռումբեր ու արկեր են պայթում, տարբեր երկրներում ուժից վեր աշխատանքից, հիվանդություններից ու սովից երեխաներ մահանում:

Ամբողջ աշխարհի ազնիվ մարդիկ իմպերիալիզմին մեղադրում են երեխաների նկատմամբ ցուցաբերած անմարդկային դաժանությունների համար: Երեխաներն էլ գնալով ավելի հաճախ են խոսում իմպերիալիզմի հանցագործությունների մասին: Ահա թե ինչ են պատմում Արտեկի միջազգային մանկական ճամբարի մասնակիցները...

### Խուզեմա Իսմայ, Պաղեստին, 14 տարեկան

Ես ծնվել եմ Պաղեստինում, բայց գրեթե չեմ հիշում իմ հայրենիքը: Իսրայելական զավթիչները գրավեցին մեր հողերը: Փախստականների անվերջանալի շարասյան հետ մեր ընտանիքը հեռացավ Գազա քաղաքից:

Հիմա ես ապրում եմ Լիբանանի պաղեստինյան փախստականների ճամբարում: Արդեն սովորել եմ վրանում ապրել, երկար հերթ կանգնել սննդի, անհամ ջրի, դեղորայքի համար: Սակայն այստեղ էլ խաղաղություն չկա: Սիոնիստները ավելի հաճախակի են գրոհում երկրի հարավային շրջանների վրա, նրանք թնդանոթներով ու գնդացիրներով ռմբակոծում են մեր ճամբարը: Մահն այստեղ անսպասելի հյուր չէ, այն չի խնայում նաև փոքրիկ երեխաներին: Սիոնիստները վստահ են, որ կարող են մեզ առանց պատժի թալանել ու սպանել, որովհետև նրանց օգնում են Միացյալ Նահանգները: Դժբախտաբար արաբական ղեկավարների մեջ էլ դավաճաններ գտնվեցին: Եգիպտոսի պրեզիդենտ Սադաթը արաբական ժողովրդի թիկունքում համաձայնություն է եկել Իսրայելի հետ:

Սակայն մեր ժողովուրդը չի դադարեցնի պայքարը, չի հրաժարվի իր հայրենիքից: Վերջերս իմ եղբայրն էլ մտավ Պաղեստինի ազատագրության կազմակերպության զինված ուժերի մեջ:

### Խատուա Տուրե, Սան-Տոմեի և Պրինսիպիի հանրապետություն, 12 տարեկան

Ընդամենը երկու տարի առաջ մեր հայրենիքը՝ երկու կղզի Աֆրիկայի արևմտյան ափին, անկախություն ձեռք բերեց: Մեր ընտանիքում ես առաջինն եմ, որ դպրոց հաճախեցի, կարդալ ու գրել սովորեցի: Սակայն պորտուգալիայի գաղութատերերին գրագետ ստրուկներ պետք չէին: Ահա թե ինչու հիմա մենք այդքան քիչ ուսուցիչներ ունենք:

Իմ հայրը մի կտոր հացի, մի ճութ բանանի, մի քանի գրոշի համար ամբողջ կյանքն անցկացրել է սպիտակ տիրոջ պլանտացիայում: Վերջին տարիներին

այրող արևի տակ երկար աշխատելու պատճառով նա ուղեղի հիվանդություն ստացավ: Միայն գաղութարարներից ջչելուց հետո նա կարողացավ առաջին անգամ դիմել բժշկի և թոշակ ստացավ: Սակայն առայժմ հազվագյուտ գյուղերում հիվանդանոցներ կան...

Երեք տարի է մենք ապրում ենք առանց օտարերկրյա պարոնների, բայց դեռ լսվում են աֆրիկացիների անեծքները ուղղված գաղութարարներին, որոնք կողոպտել են ընդերքի հարստությունը, իսկ փոխարենը թողել աղքատություն, անգրագիտություն, սով ու հիվանդություն:

Աֆրիկայի, Ասիայի և Լատինական Ամերիկայի քառասուն երկրներում մինչև այժմ պարտադիր վերաբերյալ օրենք չկա: Դպրոցների բացակայության պատճառով Լատինական Ամերիկայում 14 միլիոն երեխաներ նույնիսկ տարրական կրթություն չեն կարող ստանալ: Այդ երկրներում յուրաքանչյուր բողերին թերաանումից մահանում է մեկ երեխա:

Ալինա Կոլումբյե, Ֆրանսիա, 18 տարեկան

Յուրաքանչյուր ուսումնական տարի ինձ համար մի կյանք է թվում: Իմ հասակակիցների միջև նույն մրրցակցությունն է գնում, ինչ մեծահասակների միջև. միայն թե դիմանալ, մնալ դպրոցում: Ուսուցիչները իսկույն հեռացնում են ետ մնացողներին: Իսկ կրթություն չստացած ո՞ւր կարող ես գնալ. առանց մեզ էլ գործազուրկները շատ են... Շատ երեխաներ չեն դիմանում ապագայի, դպրոցի նկատմամբ ունեցած մըշտական սարսափին: Վերջերս մի տղա քննդեղով թունավորեց իրեն, որովհետև մի քանի անբավարար գնահատականներ էր ստացել: Բժիշկները դժվարությամբ փրկեցին նրա կյանքը:

Տանը նույնքան ծանր վիճակ է տիրում: Հայրս երբեք չի աշխատել իր մասնագիտությամբ, այլ պատահական ու ժամանակավոր գործեր է արել: Նա դարձավ դյուրաբորբոք, ավելի հաճախ է ծեծում ինձ ու եղբորս: Մայրս միշտ ասում է. «Նա դժբախտ մարդ է, դուք պետք է հասկանաք նրան: Նրա համար շատ ծանր է»:

Կարծում եք ինձ համար հե՞շտ է:

Ֆրանսիական միջին ու ցածր որակավորում ունեցող բանվորների հարյուր երեխաներից միայն մեկը կարող է միջնակարգ կրթություն ստանալ:

Կրթության վրա կատարվող ծախսերի քանակով ԳՖՀ-ն վերջին տեղերից մեկն է գրավում Եվրոպայում: Այդ երկրում ամեն տարի 15 հազար երեխաներ փորձում են ինքնասպանությամբ վերջ տալ իրենց կյանքին:

Կապիտալիստական ամենահարուստ աշխարհում՝ Ամերիկայի Միացյալ Նահանգներում գրեթե երկուս և կես միլիոն երեխաներ դպրոց չեն հաճախում:

Ռաշիդ Նասսադ, Ֆրանսիա, ալժիրցի էմիգրանտի որդի, 14 տարեկան

Երբ ես բոլորովին փոքրիկ էի, իմ հայրը գնաց աշխատանք գտնելու: Գործ գտնելուն պես մեզ հրավիրեց իր մոտ: Հորս աշխատավարձը անհամեմատ քիչ է ֆրանսիացի բանվորի աշխատավարձից, և մենք հազիվ ենք ծայրը ծայրին հասցնում: Այնպիսի տանն ապրելու համար, ինչպիսին մերն է, պետք է խիզախ լինել, որովհետև այն ուր որ է կքանդվի: Իսկ տանտերն այդ ավերակի համար անասելի շատ վարձ է պոկում մեզնից:

Եկող տարվանից երևի չկարողանամ դպրոց հաճախել: Ուսումը շատ թանկ է նստում մեզ վրա: Բացի այդ սխալ եմ կարդում, գրում և խոսում: Չէ՞ որ ֆրանսերենն իմ մայրենի լեզուն չէ, իսկ արաբերենն էլ ար-



ԱՇՈՏ ԴԱՆԻԵԼՅԱՆ

Ծնվել է 1960 թվականին: Ավարտել է Երևանի Ս. Սպանդարյանի անվան № 24 միջն. դպրոցը: Այժմ սովորում է № 82 ուսումնարանում: Տպագրվում է առաջին անգամ:

# ՀՐԴԵՀ

Մենք ապրում ենք Երևանի հնագույն թաղերից մեկում՝ մի հինավուրց տան մեջ: Մենք, այսինքն՝ ես, պապս, տատս, ծնողներս, մեծ հորեղբայրս, նրա որդիները, թոռները և պապիս հորեղբորորդիները: Բոլորս միասին ուղիղ քսան հոգի ենք, ներառյալ նաև փոքր հորեղբայրս՝ կարճ Վահրամը:

Մենք կենսախինդ ու առողջ մարդիկ ենք: Դա ամենակարևոր բանն է, որ ժառանգել ենք մեր նախնիներից, որոնք մի ժամանակ համարվել են անցյալ դարի Ղարսի ամենահուչակավոր և ամենաառողջ մարդիկ:

— Առողջ լինենք, հարուստ էլ կլինենք,— սիրում էր կրկնել պապս, երբ որևէ մեկը տրտնջում էր իր վիճակից:

Պապս հավանեց ու գնեց այդ տունը, որովհետև առջևում կար մի փոքրիկ այգի: Այգում ծիրանիներ և խնձորենիներ տնկեց, իսկ թթենու տակ մեծ ու փափուկ աթոռ դրեց: Երեկոները նստում է աթոռին և դուդուկ է նվագում: Երբ նվագում է, ողջ թաղի բնակիչները հավաքվում են այգու ցանկապատի՝ մոտ և սքանչացած լըսում նրան: Պապիս մեղմաղձոտ ու կարոտաբաղձ նվագը հնայում է բոլորին: Նա հիանալիորեն է հնչեցնում այնպիսի մեղեդիներ, որոնք մեր օրերում մոռացված են: Բայց

նա գրում այնպես վարպետորեն է, հիշեցնում, որ նույնիսկ կրկնում տողերը և հիանում:

Պապս երիտասարդ ժամանակ բանաստեղծություններ է գրել: Այժմ էլ սկսել է գրածը նորոգել և նորերը գրել: Ամեն առավոտ կարդում է իր նոր գրած քառյակները և ուզում է, որ կարծիքս հայտնեմ: Եթե ասում եմ լավ է՝ կոնֆետ եմ ստանում, իսկ երբ ասում եմ, որ բանաստեղծություն չէ, այլ բառերի կույտ, նա խեղճանում է ու մի տևական տխրում: Միայն իմ վատ կարծիքներից է այդպես տխրում: Մյուսներինը արհամարհում է:

Պապիս բանաստեղծությունները համարյա միանման են: Նա գրում է իր ծննդավայրի կախարդաշունչ բնության մասին: Գովերգում է նրա սեգ լեռների վեհությունը, անտառների և հովիտների չքնաղությունը: Մի քանի ներբող ունի նվիրած Ղարսին: Նրա բանաստեղծությունները ողողված են տրտմությամբ ու կարոտով, լույսով ու հույսով: Բայց կան նաև այնպիսի տողեր, որոնք կորցրած հայրենիքի աղեկտուր ողբ են: Պապս իր բանաստեղծությունները արտասանում է այն ճաշկերույթների ժամանակ, որոնք տեղի են ունենում մեր՝ Վարդապարյաններիս տոհմում տարին չորս կամ հինգ անգամ:

Մի անգամ կիրակի առավոտյան նա ասաց.

— Խնդրում եմ, լսիր երեկոյան գրած բանաստեղծությունս:

*Մենավոր լեռան տխուր լանջերից*
*Հեռու հեռավոր,*
*Իմ տան կամարն է լցնում մենավոր.*
*Լալիս է խռով*
*Գետակը լուռ*
*Ու ցավս առած տանում պատմում է*
*Մեր խեղճ դաշտերին, տխուր դաշտերին*
*Սարերի հովին, երկնքի մովին:*
*Դատարկված երկրի*
*Մեծ ցավի խորքից*
*Կածանը հանկարծ լռիկ վազում է,*
*Հոգուս վրայով*
*Եվ արցունքս առած տանում խառնում է,*
*Այն լույս ջրերին*
*Սարերի հովին, երկնքի մովին...*

— Դե, հավանեցի՞ր:

— Այո, լավ բանաստեղծություն է,— ասացի ես:

— Կարծեմ, Իսահակյանինն է,— ասաց Կարճ Վահրամը, որը կարդալու պահին էր ներս մտել:

— Ի՞նչ,— մռնչաց պապս,— ուրեմն Վարդապարյան տոհմի ավագը գրագո՞ղ է,— և ոտքը այնպես խփեց հատակին, որ առաջին հարկում հորեղբորս լուսամփոփը ընկավ գետին ու փշրվեց: Երկու րոպեից ողջ Վարդապարյանները հավաքվեցին երկրորդ հարկում: Պապս բարկությունից կապտած, հայհոյում էր Կարճ Վահրամին, որը վախից գունատված կուչ էր եկել հորեղբորս կողքին:

— Ների՛ր ինձ, հա՛յր, ես չցանկացա քեզ վիրավորել,— ասաց նա նվաղած ձայնով:

— Կորի՛ր գրողի ծո՛ցը և մինչև չփոխես կարծիքդ բանաստեղծություններիս մասին, աչքիս չերևաս,— ասաց պապս փոքր-ինչ հանգստացած: Վահրամը արագ տանից չքվեց: Շուտով տատիս հորդորների շնորհիվ պապիս բարկությունն էլ իջավ:

Եվ նա տոնորակի պես սկսեց բարձրաձայն երազել, որ իր հիասքանչ բանաստեղծություններն առանձին գրքով կհրատարակի ու ստացած հոնորարով կթռչի Ղարս: Նա այնքան հաճախ էր խոսել այդ մասին, որ մենք սկսել էինք հավատալ և անհամբեր սպասում էինք, թե երբ է բանաստեղծությունները խմբագրությանը հանձնելու:

— Այո, շուտով հոնորար կստանամ և կտեսնեմ պապերիս ծննդավայրը,— ասաց պապս:



դեն մոռանում եմ: Երբեմն հայրս ինձ արաբերեն է դիմում, իսկ ես ֆրանսերեն եմ պատասխանում:

Անա թե ինչու, ժամանակն է մտածել ապրելու մասին: Գները բարձրանում են, իսկ հայրիկի աշխատավարձը նույնն է մնում: Արդեն երկու տարի է ես կիրակի օրերին օգնում եմ ծաղկավաճառին. այդ օրերին շատ գնորդներ են լինում: Գուցե խանութի տիրոջ մոտ ինձ համար էլ գործ գտնվի: Իսկ եթե ո՞չ: Ասում են, աշխատանքի բորսայում գործատեղ որքան ուզում ես կլինի:

Կապիտալի երկրներում գործազուրկների թիվը հասնում է 20 միլիոնի: Մեծահասակներին աշխատանք չկա: Այն դեպքում, երբ աշխատողների չորս տոկոսը 10—14 տարեկան երեխաներ են: Տերերին շահավետ է անչափահասներին գործի ընդունելը՝ նրանց աշխատանքը անհամեմատ ցածր է վարձատրվում:

ԱՄՆ-ում հատուկ բորսաներ կան, որտեղ վաճառում են Հարավային Կորեայի երեխաներ: Փոքրիկ սարուկն արժե 1200 դոլար:

Բայց պապիս պատրանքները շուտով խորտակվեցին: Պապս այդ օրը տանը չէր: Տատս մոռացել էր անջատել էլեկտրական արդուկը և այդպես թողնելով սեղանին, գնացել էր հարևանի տուն: Առաջինը ես նկատեցի հրդեհը և վազեցի հրշեջ խմբին կանչահարելու: Երբեք այդպիսի մեծ ու սքանչելի հրդեհ չէի տեսել: Ես, հայրս, մեծ հորեղբայրս և պապիս հորեղբորորդիները, մինչև հրշեջ խմբի գալը հասցրինք փրկել ըսպասքապահարանը, հանդերձապահարանը և աթոռները: Երկրորդ անգամ ջուր լցնելով վրաս վազեցի ներս, ցանկանալով պապիս բանաստեղծությունները փրկել, բայց արդեն ուշ էր... Հրշեջները եկան փոքր-ինչ ուշացումով և կարողացան միայն ննջասենյակը փրկել:

Երեկոյան եկավ պապս, իմացավ, սկսեց հայհոյել հրշեջներին և իր այրված տան շուրջը պտտվել:

— Մի՞թե այրվել են բանաստեղծություններս: Մի՞թե դու չկարողացար ներս խուժել ու փրկել առաջին հերթին դրանք,— ասաց նա, երբ կատարել էր չորրորդ պտույտը:

— Երբ ներս մտա, արդեն այրվել էին,— ասացի ես:

Պապս ձեռքերը գրպանները խոթեց և շարունակեց պտույտները տան շուրջը: Կատարեցինք քսաներորդ պտույտը: Ես շնչասպառ հազիվ էի հասնում նրան: Բայց որքան ավելանում էր մեր կատարած պտույտների թիվը, այնքան ավելի էր իջնում պապիս բարկությունը: Եվ նա քայլերը դանդաղեցնելով, այնպիսի մարդու տոնով, որ գիտե դեռ ամեն ինչ հիմնահատակ չի կործանված, ասաց.

— Արա՛մ, մեծ է մեր կորուստը: Բայց միևնույն է, չպետք է հուսահատվել, հարկավոր է ապրել, երազելով ապրել ու հուսալ:

Ես լռությամբ համաձայնեցի, և մենք գնացինք քնելու:

Նկ. ԿԱՐԵՆ ՍԱՐԲԱՏՅԱՆԻ





# ՄՐՑՈՒՅԹ ԱՍՖԱԼՏԻ ՎՐԱ

Երեխաների պաշտպանության միջազգային օրը՝ հունիսի 1-ին, 26 կոմիսարների անվան զբոսայգում տեղի ունեցավ «Թող փնի միշտ արևը» խորագրով կավճանկարների մրցույթ:

Մրցույթին մասնակցեցին Երևան քաղաքի դպրոցների երեխաները: Նրանք գույնզգույն կավիճներով ասֆալտի վրա նկարեցին խաղաղության ճերմակ աղավնիներ, ջարդված տանկեր, շղթայակապ ռումբեր և այլն:

Առավել հետաքրքիր էին սառցվել Ափոյան Արմենի (№ 109 դպրոց) «Նեյտրոնային ռումբին՝ ոչ», Ղազարյան Հովհաննեսի (№ 109 դպրոց) «Մենք պատերազմ չենք ուզում» և Այվազյան Մարթայի (№ 19 դպրոց) «Ես տիկնիկիս ու ինձ համար խաղաղություն եմ ուզում» կավճանկարները: Հենց նրանք էլ արժանացան ժյուրիի սահմանած 1-ին, 2-րդ և 3-րդ մրցանակներին:



Լուսանկարը՝ ԼԵՎՈՆ ՀԱՅՐԱՊԵՏՅԱՆԻ

# ՎԱԳՐԻ ԵՎ ՄԱՐԴՈՒ ՎԵՃԸ

*ՎԱԽԹԱՆԳ ԱՆԱՆՅԱՆ*

Ճեկ եղեգնուտից դուրս սողաց վագրը, և նրա շեկ ու շերտավոր մորթին հուրհրաց արեգակի շեկ շողերի տակ: Բարձրացավ թմբին, հորանջեց, ձգեց պողպատյա մկանները, երկար պոչը լախտի նման խաղացրեց և ահագին ժանիքները բացելով, խուլ մռլտաց: Ամբողջ ցերեկը մրափել էր ջամբուտի խորքում ու հիմա, արևամուտին դուրս էր եկել որսի: Այդ այն ժամն էր, որ վայրի կենդանիները զգուշությամբ ելնում են իրենց թաքստոցներից, վախվխելով կեր են ճարում մոտակայքում, իսկ աղջամուղջի թանձրանալիս գնում են իրենց ծարավը հագեցնելու:

«Չէ, դեռ շուտ է, նոր դաշնամ»,— մտածեց վագրը: Փորի վրա պիտի պառկեր այն շավիղի մոտ, որը եղեգնյա պատի միջով ձգվում էր դեպի գետը: Եվ քանի որ իր մորթին ջամբուտի գույնն ուներ, ապահով էր, որ չի նկատվելու իր զոհերի կողմից: Միայն թե գլուխը թաթերին դրած կարողանար անշարժ մնալ:

Շուտ եկավ, որ նորից մտնի եղեգնուտ, հանկարծ իր նման մի կենդանի եկավ առաջը՝ նոր բռնված դաշտամուկը բերանին: Նրա պոչը նույնպես բարակ էր ու երկար, երկար էր նաև մարմինը: Գլուխը կլոր էր իր գլխի նման, ականջները փոքր և մարմնի վրա նույնպես զուգահեռ թուխ շերտեր կային:

«Սա էլ մեր ցեղից կլինի,— մտածեց վագրը, բայց հենց այդ մտքից վիրավորվեց.— Սա ի՞նչ է, էս ողորմելի թզուկը, որ մեզնից լինի, ախար մենք թագավորական ցեղ ենք...» Ու բարկացած հարցրեց.

— Լսի՛ր, ո՞վ ես, ինչացո՞ւ ես...

— Ե՞ս... ես կատու եմ,— դողացող ծնոտները բացեց թզուկը և մուկը բերանից ընկավ ու փախավ:

— Այսինքն՝ ոչ թե կատու, այլ կատվի ձուտ,— ուղղեց վագրը:

— Ձուտ չեմ, տե՛ր, ես նույնիսկ ծեր եմ:

— Ինչպե՞ս թե...

Վագրը չալ աչքերով խորազնին դիտում էր իր խղճուկ ցեղակցին:

— Ուրեմն դու մեր ազգի՞ց ես,— արհամարհանքով հարցրեց նա:

— Միշտ այդպես, տե՛ր իմ, մենք ազգակիցներ ենք...

— Թո՛ւ-ո՛ւ-— նողկանքով թքեց վագրը,— բա ինչի՞ ես էդպես փոքր մնացել:

— Իմ տեղը լինեիր, դու էլ փոքր կմնայիր:

— Լեզվի՛ն նայեցեք...

— Ների՛ր, տե՛ր իմ,— ետ-ետ գնալով փորը գետնին հպեց կատուն:—Ուզում էի ասել՝ Աղամորդին, որի մոտ ապրում եմ ես, այնքան հզոր է, որ... նրա...

— Ի՛ի՛ի՞նչ...— մռլտալով առաջ շարժվեց վագրը, և նրա չալ աչքերը շանթեր արձակեցին:— Հզոր ասացի՞ր... Ինձնից հզորը կա՞...

Կատուն ետ-ետ գնաց, հասավ առվի ափի բարդուն, արագ մագլցեց վեր ու իր ապահով դիրքից համարձակ պատասխանեց.

— Քեզնից էլ հզոր, դեռ քո պապից էլ...

Վագրը մռնչաց վիրավորանքից, ցատկեց ծառին, գրկեց-թափահարեց, բայց արմատահան անել չկարողացավ: Ճյուղերի արանքում կուչ եկած կատուն դողդողում էր ահից ու տեսնում, թե ինչպես է ծառը ճյուղակտոր լինում, որպես ահեղ փոթորկից:

Կեղև ու բուն ճանկռտելով, վեր մագլցեց վագրը, բարակ բարդին չէր դիմանում նրա ահագին ծանրությանը, բայց կատուն արդեն տեղավորվել էր գագաթի զույգ ճյուղերի արանքում:

---

## ԱՄԱՌՆԱՄՈՒՏ

*ԱՐԵՎՇԱՏ ԱՎԱԳՅԱՆ*

Փաթիլները մեկ-մեկ,
որ բացատում իջան,
թիթեռներ են դարձել
ծաղիկների վրա.
ծաղիկները հիմա
փփսում են դաշտում,
փփսում է լույսը
տերևների վրա:

Լույսի ծփանքներից
աղմկում են թուփ-թուփ
կարոտները հողի,
լուսաբերան քամուց
ղողանջում են ուժգին
կակաչները էլի:

Լույսի նման նորից
ձկնիկներն են լողում,
ջրերի մեջ զույալ
պահմտոցի խաղում,
և արևը վերից
այգիների վրա
քաղցրություն է մաղում:

Քաղցրությամբ են լցվում
սաղարթներում պահված
պտուղները կանաչ,
և գարունը խելառ
իր դռներն է բացում
նորեկ ամռան առաջ:

— Լավ, իջի՛ր, ներքևում խոսենք,— առաջարկեց վագրն ու ցած թռավ:

— Հո ինձ չե՞ս վնասի... ախար ես քո արյունակիցն եմ,— ահով հարցրեց կատուն:

— Չեմ վնասի... Թագավորական խոսք եմ տալիս... Իջի՛ր:

Կատուն վախվխելով իջավ և հեզությամբ կանգնեց վագրի առաջ:

— Ասա՛ տեսնեմ, գաճա՛ճ արարած, քո տերն ինչո՞վ է ուժեղ ինձնից,— վրդովմունքը զսպելով հարցրեց վագրը:

— Խելքով... հնարքներով...

— Ադամորդին դո՞ւ ես:

Մարդը գլուխը վեր բարձրացրեց, տեսավ ահռելի գազանին իր առաջ սպառնագին կանգնած, բայց զսպեց երկյուղը:

— Այո՛, ես եմ, ի՞նչ կհրամայես:

— Դու այդ ինչպե՞ս ես վարվել իմ ցեղակցի հետ, որ այդպես փոքր է մնացել:

Ադամորդին հարցը չհասկացավ:

— Այսինքն... ո՞նց թե... Դա կատու է, փոքր պիտի լինի, բա հո...

— Ո՛չ,— կտրեց վագրը,— նա ինձ ասաց, որ իր պապերը խոշոր են եղել ինձ նման...



Նկ. ԳՐԻԳՈՐ ԹՈՐՈՍՅԱՆԻ

Ու կատուն ահով ետ-ետ գնաց:

Վագրը մտածմունքի մեջ ընկավ:

— Լավ: Ինձ տար քո տիրոջ մոտ,— վճռեց նա:— Ես քո էդ Ադամորդուն խելք ու հնարք ցույց կտամ...

Ու ճամփա ընկան դաշտերով, կատուն առաջից ցատկոտելով, իսկ վագրը հետևից ծանր ու իր դիրքին արժանավայել հպարտ քայլերով:

Գյուղի ծայրին մի մենավոր գոմ կար, առաջը՝ երկոտանի մի արարած, որ գերանին հարվածում էր ձեռքի պսպղուն գործիքով: Այդ արարածից փչում էր մի անծանոթ հոտ, որ չի կարող անտանելի չլինել բոլոր վայրի կենդանիների համար: Զզվեց այդ հոտից վագրը, բայց որոշեց համբերել: Իսկ իր թզուկ ցեղակիցը փաղաքուշ քսվում էր այդ նողկալի արարածի ոտքերին:

«Տես ո՛նց է քծնում... Եվ իրեն էլ մեր հպարտ ազգից է համարում.... Թո՛ւհ»,— զայրացավ վագրը և հենց զայրագին էլ հարցրեց.

Մարդը ծոծրակը քորեց. մտածում էր, թե ինչ պատասխանի, որ գազանի զայրույթը մեղմի:

— Պատասխանի՛ր,— որոտաց վագրը:— Դու այսպիսի ժանիքներ ունե՞ս:

Ու ցույց տվեց դաշույնանման երկար ու սուր իր ժանիքները:

— Սրանք ես խրում եմ եղջերվի վիզն ու վերջ, իմն է: Հապա քո՛ ատամները ցույց տուր տեսնեմ:

Մարդը բեղի տակ քմծիծաղով բացեց իր պառավ բերանի պառավ ատամները՝ դեղնած, բութ, կոտրըտված:

Վագրը խնդաց բավականությունից:

— Դու դրանցով իսկի կաղին էլ չես կարող ջարդել: Թաթե՛րդ ցույց տուր տեսնեմ:

Ու դարձյալ խնդաց մարդու բութ եղունգների վրա:

— Դե հիմա նայի՛ր իմ ճիրաններին:

Ու աջ թաթը մեկնեց, և մարդը տեսավ, թե ինչպես իրենց մագմզոտ պատյաններից դուրս ցցվեցին երկար

ու կեռ ճանկերը՝ ամեն մեկը մի սրած ածելու նման...

— Սրանցով ես կարող եմ նույնիսկ արջի փորը պատառոտել... Ու հիմա քո այդ թզուկ կատուն ինձ հավատացնում է, թե իբր դու աշխարհի բոլոր կենդանիներից ուժեղ ես...

Այս ասելով վագրը ձգեց-խաղացրեց իր պողպատե մկաններն չալ մորթու տակ, ապա հպվեց գետնին, երկար պոչով սկսեց հարվածել հողին և պատրաստվեց թռիչք գործելու:

— Համբերի՛ր,— ասաց մարդը,— ժամանակ տուր գործս վերջացնեմ, հետո կկռվենք:

Ու շարունակեց կիսատ թողած գործը. ծանր կացնի բութ կողմով հարվածում էր գերանի մեջ խրված սեպին:

Հարվածեց մեկ, հարվածեց երկու, հարվածեց հինգ, սեպը դանդաղ խրվում ու ճեղքում էր գերանը:

— Լսի՛ր, շա՜տ եմ սպասելու,— անհամբեր հարցրեց վագրը:

— Թե որ շտապում ես, օգնի՛ր ինձ գործը վերջացնենք, նոր կռվենք:

Վագրը առաջ եկավ, հարցրեց.

— Ցո՛ւյց տուր, ինչո՞վ օգնեմ:

— Դե քո թաթերը, ոնց որ տեսնում եմ, շատ են ուժեղ, խոթի՛ր ճեղքի մեջ, քաշիր՝ գերանը երկու տապակ արա։

Վագրը փորձեց. ճեղքը նեղ էր, իսկ նրա ամեն թաթը մի ափսեի չափ բան էր, իսկի նեղ ճեղքի մեջ կմտնե՞ն որ:

— Ե՛տ կանգնիր, մի քիչ էլ լայնացնեմ:

Ու մարդը հարված հարվածի հետևից տեղաց սեպի գլխին, ու սա գնալով խորացավ, ու քանի խորացավ, ճեղքն այնքան լայնացավ: Լսելի էր, թե ինչպես բնափայտի ջղերը տնքալով ու ճայթյունով պոկվում են իրարից և ճեղքը երկարելով մոտենում է գերանի մյուս ծայրին:

Երբ ճեղքը բավական լայնացավ, մարդը սրբեց ճակատի քրտինքն ու դիմեց վագրին.

— Ա՛յ, հիմա որ թաթերդ ներս կմտնեն:

Վագրը թաթերը խրեց ճեղքի մեջ, մկանները լարեց և ուժ տվեց, որ գերանը երկու մասի բաժանի:

Այդ ժամանակ մարդը կացնի բութ կողմով մանր հարվածներ հասցրեց սեպի կողերին, սեպը թուլացավ, դուրս թռավ... և գերանի ճեղքը վայրկենապես փակվեց: Փակվեց, ահռելի ուժով սեղմեց գազանի թաթերը: Վագրը ցավից այնպես գոռաց, որ գյուղի շները կռնձկռնձալով փախան մտան իրենց բները, իսկ հանդից վերադարձող նախիրը ցրիվ եկավ ահաբեկված: Թափ տվեց, որ թաթերը ազատի՝ ցավն ավելի սաստկացավ, մարմինը շպրտեց գերանի վրայով, բայց թրմփոցով գետնին զարնվեց, որովհետև թաթերը բռնված էին: Կանգնեց հետևի ոտքերի վրա, գլխից վեր բարձրացրեց գերանը ու դեն նետեց, բայց գերանի հետ ինքն էլ շպրտվեց հեռու և գրխկաց փոշու մեջ:

Իսկ մարդը մի փոքր հեռվում կոճղին նստած՝ լցնում էր իր հին ծխամորճը, աչքի պոչով դիտում իր հակառակորդին և հեգնախառն մի ժպիտ էր խաղում բերանի անկյուններում:

— Բա՛ց թող ինձ, մա՛րդ...

— Քեզ բռնողը հո ե՛ս չեմ... Իրե՛ն ասա, թող բաց թողնի....

— Բա՛ց թող,— նորից որոտաց հպարտ գազանը: Նա, որ իր կյանքում միայն հաղթանակներ էր տարել, խնդրելու սովոր չէր:

— Մի՛ նեղանա, վա՛գր ախպեր,— ասաց մարդը ծխամորճը բերանից հանելով:— Ես քեզ տեղին եմ պատժում: Այդ թաթերով չէ՞ր, որ կախվում էիր մեր Արաքս գետը ջրի եկած ջեյրաններից: ˉ

— Ի՞նչ ջեյրան... ձեր կողմերում ես ջեյրան չեմ տեսել: Ա՛յ, շատ ներքևում ջեյրաններ ես կերել եմ:

— Գիտեմ, Մուղանում կերած կլինես... Դարձյալ մեր այս Արաքսի ափին... Իսկ այստեղ քո պապերն էին ուտում: Նրանք վայրի էշերին նույնպես վերջ տվին: Պատմությունից գիտենք, որ քամու նման սուրող այդ չեկ կենդանիներից շատ են եղել մեր այս չեկ բլուրներում...

— Չեմ տեսել, մա՛րդ... Բա՛ց թող ինձ...

— Քո նախնիները թե՛ տեսել են, թե՛ վայելել... Իսկ վայրի ցուլերի՞ն, քո անխիղճ պապերը քանի՛-քանի՛ ցուլի արյուն թափած կլինեն մեր գետի ափին...

— Ի՞նչ է, նրանց տեղը ե՞ս պիտի պատասխան տամ,— բարկացավ վիրավորը:

— Ինչո՞ւ նրանց տեղը: Հիմա, որ անցել ես սահմանը, բարի նպատակո՞վ ես եկել,— լուռ ծիծաղելով հարցրեց մարդը:— Թե՞ մենք չենք հասկանում դու ինչ ես փնտրում եղեգնուտում: Մի քանի վարազ է մնացել, նրանց էլ ես ուզում վերջ տալ ու նոր միայն ետ գնալ Ղարադաղ, Թալիշ, չգիտեմ որ ջհաննամը, որտեղից եկել ես գողեգող, միտքդ ծուռը, ժանիքներդ սրած... Լա՛վ... դե լավ, ես մարդ եմ, գազան չեմ, կազատեմ քեզ, միայն թող սա քեզ դաս լինի...

Ու մարդը սեպը խրեց գերանի ճեղքի մեջ, կացնի բութ կողմով մի քանի հարված հասցրեց, և վագրը զարմանքով տեսավ, թե ինչպես ճեղքը լայնացավ ու թաթերն ազատվեցին այդ սարսափելի աքցանից...

— Գնա՛,— ասաց մարդը,— գնա և իմացիր իմ ով և ինչ լինելը: Մի բան էլ իմացիր, որ ես իմ ունեցած հազար հնարքներից միայն մեկը գործածեցի, և դու այդ մեկին անգամ չդիմացար... Հիմա մեզնից ո՞վ է ուժեղ...

— Դո՛ւ,— խեղճացած մռլտաց վագրը և շուռ եկավ ու սլացավ դեպի Արաքսի եղեգնուտը...

Մայր մտնող արեգակի շողերից շամբուտը հուրհրում էր արքայական ծիրանու նման: Արևը բեհեզ էր հագցրել նաև նրա վիրավոր տիրակալին, որ հիմա դաշտերով սողում էր դեպի փրկարար թավուտը:

Կատուն նայում էր նրա հետևից, խղճում էր իր ցեղակցին, բայց և հպարտ էր, որ ապրում է հզոր մարդու հովանու տակ...

# ԶՐՈՒՅՑՆԵՐ ԼԵԶՎԻ ՄԱՍԻՆ

*ԼԵՎՈՆ ՀԱԽՎԵՐԴՅԱՆ*
*Բանասիրության դոկտոր*

## 15. ԻՆՉՊԵ՞Ս ՎԱՐՎԵԼ ԷՍ ՈՒ ԷՆ-Ի, ԷՍՊԵՍ-Ի ՈՒ ԷՆՊԵՍ-Ի, ՀԱ ՈՒ ՉԷ-Ի ՀԵՏ

Այս հարցումով ավարտվեց մեր նախորդ զրույցը: Իրոք որ՝ ինչպե՞ս վարվել, երբ ունենք դրանց մաքուր գրական համարժեքները՝ այս, այն, այսպես, այնպես, այո, ոչ...

Այս հարցին դժվար չէ պատասխանել, քանի որ դրա պատասխանը տվել է կյանքը, լեզվի զարգացման կենդանի ընթացքը: Կյանքը ցույց տվեց, որ մեր զրույցի վերնագրում նշված բառերն ավելորդ չդարձան, ասպարեզից դուրս չեկան իրենց գրական համարժեքների պատճառով:

Ինչո՞ւ, մի՞թե էս-ն ու այս-ը, չէ-ն ու ոչ-ը, էսպես-ն ու այսպես-ը նույնը չեն իմաստով: Այո՛, իմաստով նույնն են, բացարձակապես նույնը: Այդ դեպքում ինչի՞ են պետք նույնիմաստ զուգահեռները: Խնդիրն էլ հենց այն է, որ դրանք, ճիշտ է, իմաստով նույնն են, բայց ոճական գունավորմամբ, հուզական-հոգեբանական բովանդակությամբ տարբեր են, և շատ են տարբեր:

Գուցե և սա ամենալավ առիթն է առաջ քաշելու այն շատ կարևոր միտքը, որ լեզուն ոչ միայն հաղորդակցության միջոց է, այլև խորապես հոգեբանական երևույթ: Սա պետք է լավ իմանալ, ուստի և արժե մի փոքր կանգ առնել դրա վրա: Մեր նշած բառերը շարենք իրար տակ՝ իրենց գրական համարժեքներով.

| | |
|---|---|
| էս | այս |
| էն | այն |
| էսպես | այսպես |
| էնպես | այնպես |
| հա | այո |
| չէ | ոչ |

Դժվար չէ նկատել, որ առաջին շարքի բառերը հասարակ են, կենցաղային-խոսակցական, իսկ երկրորդ շարքի բառերը կիրթ են ու հանդիսավոր: Հենց այս հատկությունների շնորհիվ էլ երկուսն էլ կարևոր են ու հարկավոր: Այս երկու շարքում տեղ գտած բառերը (որոնց թիվը կարելի էր շատ ավելացնել) ոճականորեն չեն կարող միմյանց փոխարինել: Դրանցից ամեն մեկն ունի գործածության իր տեղը, իսկ դա որոշում է լեզվի ճաշակը, լեզվի իմացությունը, ոճի զգացողությունը: Բանիմաց թարգմանիչը, ասենք, Չեխովի երկերը թարգմանելիս նրա բոլոր հերոսներին չի կարող նույն լեզվով խոսեցնել, քանի որ բնագրում նրանք նույն լեզվով չեն խոսում, ուստի և նա Չեխովի գեղջուկներին կխոսեցնի այս առաջին շարքի բառապաշարով, մտավորական հերոսներին՝ երկրորդ շարքի:

Բայց ոչ միայն տարբեր կրթության տեր, տարբեր միջավայրերից ելած մարդիկ են տարբեր կերպ խոսում, այլև հենց նույն մարդիկ՝ կյանքի տարբեր պարագաներում: Անպայման նկատած կլինեք, որ նույն մարդը սովորական զրույցի ժամանակ մի կերպ է խոսում, դաս պատասխանելիս՝ մեկ ուրիշ և ըստ այդմ էլ ընտրում է իր բառապաշարը: Մի դեպքում, ամբիոնից խոսելիս, մեր բերած «կիրթ» ձևերն է գործածում, ընկերոջ հետ վիճելիս՝ «հասարակ» ձևերը: Բայց դա վերաբերում է մեր գրավոր խոսքին ևս. մի՞թե դիմում գրելիս մենք նույն բառապաշարն ենք օգտագործում, ինչ որ նամակ գրելիս: Իհարկե՛, ոչ: Եվ նամակ գրելիս էլ՝ մի՞թե մենք ընտրություն չենք անում բառերի միջև մեր մտերիմ ընկերոջը կամ մեր ուսուցչին գրելիս: Իհարկե, անում ենք:

Բայց բանը դեռ սրանով էլ չի սպառվում: Նկատե՞լ եք արդյոք, հուզական տարբեր վիճակներում նույն մարդը թեկուզև նույնիմաստ, բայց ոճական տարբեր գունավորում ունեցող բառերի է դիմում: Ասենք, սաստիկ բարկացած պահի չենք ասի՝ «Այս ի՛նչ խայտառակություն է, ո՛չ, այսպես շարունակել չի՛ կարելի», այլ կասենք՝ «Էս ի՛նչ խայտառակություն է, չէ՜, էսպես շարունակել չի՛ կարելի»: Ի՞նչն է այս երևույթի հիմքը: Հավանաբար այն, որ ժողովրդական լեզվի բառերն ավելի անմիջաբար են արտահայտում մեր հուզմունքը և միանգամից հայտնվում են մեր լեզվի ծայրին, մինչդեռ «մաքուր գրական» շարքի ձևերը, կարծես, նվազ հուզական են և ավելի դատողական, դեռ պետք է մի քիչ մտածել այդ բառերը մտքում հղկելու համար, դրանք կարծես միջնորդաբար են արտահայտում մեր հուզմունքը:

Այս ամենը, ինչ որ ասում ենք, կապված է մեր ոչ այնքան գիտակցության, որքան հուզաշխարհի հետ, ոչ այնքան դատողության, որքան հոգեբանության հետ:

Սա հենց այն է, ինչ կարևոր է համարել շեշտել Հովհաննես Թումանյանը, երբ գրիչ է վերցրել բացատրելու, թե ինչու է ինքը նախապատվություն տալիս էս ու էն-ին: Նա այն միտքն է հայտնել, որ երբ ինքը գործ է ածում էս ու էն

ձևերը, ապա դրա համար «մի հոգեբանական նուրբ պատճառ» ունի: Դա այն է,— գրել է Թումանյանը,— որ ժողովրդականը «շատ ավելի հարազատ լեզու է ինձ համար, անկեղծ ու սրտիս մոտ»: Նա ուրիշ, և շատ ուժեղ, կռվաններ ևս բերում է հօգուտ իր կողմնորոշման, բայց առաջինը հոգեբանական է: Ասենք նաև, որ այս-ի ու էս-ի և նման բազմաթիվ ձևերի տարբերությունն այնքան մեծ չէ, որքան թվում է սովորաբար: Դա արդյունք է հայոց լեզվին շատ բնորոշ հնչյունափոխության երբ յա, յու, այ երկհնչյուններ ը ժառանգում են է: Այն էլ կա, որ երբեմն պահպանվում են երկու ձևն էլ՝ ոսկյա և ոսկե, թեև մեկը մյուսի հնչյունափոխված ձևն է:

Վերջապես, չպետք է մոռանալ, որ Թումանյանը, ինչքան էլ ժողովրդական խոսքի նախանձախնդիր, բնավ էլ չի մերժել մեր բերած երկրորդ շարքին պատկանող «մաքուր գրական» ձևերը, այլ գործ է ածել դրանք ևս, երբ հարմար է գտել: «Այդպես է եղել հնումը այդ գավառը և այդպես է այսօր էլ», կամ՝ «Խորնդիրն այն է... թե այնտեղ, այն ժամանակ, այն րոպեին մտքումս այսպես էի ասում...» Այս նախադասությունները առնված են Թումանյանի մի ակնարկից և մի հոդվածից, որոնք տեղ են գտել իր երկերի վեցերորդ հատորում, այն հատորում, որից առնված են դատողությունները էս-ի և էն-ի մասին:

Ուրեմն, Թումանյանը կարևոր է համարել պահպանել և՛ մեկ, և՛ մյուս ձևերը, քանի որ դրանցից ամեն մեկն ունի իր կիրառության տեղը և ամեն մեկը պիտանի ու գեղեցիկ է իր տեղում: Թումանյանը մեր ուսուցիչն է, ամեն ինչում և ամենուրեք: Ուրեմն, այստեղ ևս մենք պետք է հետևենք մեր ուսուցչի օրինակին՝ պահպանել բոլոր ձևերը, իմանալ դրանց կիրառման տեղն ու եղանակը:

Հենց այդպես էլ մեզ առաջարկում է մեր օրերի լեզվաբան Ռաֆայել Իշխանյանը, «Սիրել և պահպանել մայրենին» գրքույկի էջերում. «Ոմանք էլ մաքուր խոսելու ցուցանակի տակ պայքարում են զուտ հայերեն այնպիսի ժողովրդախոսակցական բառերի դեմ, ինչպես՝ ոնց, հա, չէ, ուզում եմ, էսօր, էսպես, էգուց և այլն, պահանջում են, որ ասեն միայն՝ ինչպես, այո, ոչ, կամենում եմ (կամ ցանկանում եմ), այսօր, վաղը, և այլն: Այսպիսի մոտեցումը նույնպես աղքատացնում է լեզուն, հատկապես բանավոր խոսքը: Գրագետ խոսել՝ չի՛ նշանակում գրքային լեզվով խոսել»:

Ճիշտ նույնն է հանձնարարում և ռուս լեզվաբան Լև Ուսպենսկին. «Նա, ով ուզում է տիրապետել ռուսերեն լավ խոսքին, պետք է վարժվի լսել, հիշել ու գործածել և՛ հոմանիշները, և՛ հնաբանություններն ու նորաբանությունները... և՛ բարբառային բառերը՝ ամեն դեպքում, երբ դրանք կարող են խոսողի միտքն ու զգացմունքն արտահայտել ավելի վառ, գունեղ, ուժեղ, ավելի ճիշտ ու անսպասելի, քան սովորական դարձած գրական տափակ բառը»:

Մեզ մնում է լսել և կատարել մասնագետ մարդկանց խորհուրդները: Բայց Լև Ուսպենսկու խոսքի մեջ մենք հանդիպեցինք անծանոթ բառերի՝ հնաբանություններ, նորաբանություններ... Ի՞նչ են դրանք, ի՞նչ են նշանակում: Մեր հաջորդ զրույցները կնվիրենք դրանց, բայց ամենից առաջ՝ գրաբարին, քանի որ մեր ժամանակակից հայերենի հնաբանությունները նրա հետ են կապված ամենից ավելի:

# Սարանիստ

ՀՈՎՀԱՆՆԵՍ ՍԱՐՈՅԱՆ

Կանաչ սարալանջին՝ հպարտ բազմած մի գյուղ,
Եվ գյուղ բերող հողե մի խորդուբորդ ճամփա,
Տոթից նիրհող ծառեր, քարե տնակ ու հյուղ,
Հովում՝ պառկած մի շուն, մի էշ՝ մոխրաթավալ:

Սայլի քնկոտ ճռինչ՝ դաշտի ճանապարհին,
Կտավատի հսկա մի դեզ՝ սայլի վրա,
Մի ծեր սայլվոր ահա՝ խարազանը ձեռին,
Հոգնած եզներ՝ սև խալ ճակատների վրա:

Մանուկների մի խումբ՝ թփուտներում պահված,
Կտավատի փնջեր՝ ճանապարհի փոշում,
Խարազանի սույրը՝ հանկարծ օդում կախված,
Երկչոտ լորերի պես՝ մանուկներ են փախչում...

Ինչքան վաղուց էր այդ, չի էլ եղել կարծես,
Չի մնացել նույնիսկ խարազանի սպին,
Ու ոչ սայլ կա հիմա, ոչ սայլվոր կա, ոչ եզ,
Ես եմ միայն կանգնած իմ մանկության ճամփին:




ՄԱՐԻԱՆ ՕՐԼՈՆ

Եվ այսպես, մարեց Ծիմեկի փառքը:

Դեռ երկու օր առաջ նրան կոչում էին ոչ այլ կերպ, քան «Շեռլոկ», «Դպրոցական դետեկտիվ», «Հանճարեղ գանգ», իսկ այսօր նա լսում է միայն ծաղր ու խայթոցներ:

— Տարվեցիր, ապերի՛կ,— ծաղրում են նրան վեցերորդ Ա-ի տղաները,— ատամներդ ջարդեցիր «Անմուր Ձեռքի»-ի վրա: Քիթդ շուտ էիր ցցել: Կարծեցիր հանաք բան է սիշշիկ լինելը:

Նրանք այդպես էին ասում, որովհետև չգիտեին ճշմարտությունը: Միայն Ծիմեկն ու ես գիտեինք այն, և ուրիշ ոչ ոք: Գուցե նաև Լուկաշը, թեև դրանում համոզված չեմ:

Սակայն ավելի լավ է նախ պատմեմ, թե ինչպես Ծիմեկը հռչակվեց, ինչպես նա Ծիմեկից դարձավ Շեռլոկ:

Սկսվեց ամեն ինչ այն օրվանից, երբ Ծիմեկը հայտնաբերեց ինքնահոս գրիչներ հափշտակողին: Դպրոցում գողը անարգել մտել էր ծակոծուկերը և չէր բռնվել: Վերջապես մեկն առաջարկեց հայտնել միլիցիային: «Ինչո՞ւ միլիցիային,— ասաց Ծիմեկը,— ես ինքս կբռնեմ գողին»: «Դո՞ւ, տես, որ նա հանկարծ քեզ էլ չգողանա»: Ծիմեկը պատասխանեց. «Դեռ կտեսնեք»: Եվ երեք օր անց դպրոց բերեց տասներկու գրիչը: Ինչպե՞ս էր կարողացել: Հայտնի չէ: Բայց այդ արարքը նրան հռչակ բերեց և բաժանեց դպրոցը երկու բանակի: Մի բանակին գլխավորում էր վեցերորդ Բ-ն, որ Ծիմեկի դասարանն էր, Ծիմեկին կոչեց «Շեռլոկ» և երկինք հասցրեց նրա կրիմինալիստական ընդունակությունները: Մյուսը վեցերորդ Ա-ն էր, որը պնդում էր, թե Ծիմեկն ինքն է ընկերների գրիչները գողացել, որպեսզի հեշտ փառք վաստակի:

Վեճը թեժանում էր: Եվ ով գիտի, թե ինչով կվերջանար, եթե չլիներ վեցերորդ Ա-ի Մացեկ Բեցեզիայի վրա կատարված խորհրդավոր հարձակումը: Այդ հարձակումն էլ հենց հաստատեց Ծիմեկի փառքը և ստիպեց նրա հակառակորդներին լռել: Բայց, ավա՜ղ, ոչ երկարատև:

Իսկ այդ անհա թե ինչպես եղավ: Մի երեկո, երբ Ծիմեկը նստած իր դասերն էր պատրաստում, Մացեկը վազելով ներս ընկավ.

— Ծիմե՛կ, նայի՛ր ինձ...

Ծիմեկը նայեց և աչքերը ճակատին թռան:

Մացեկը նման էր վտանգավոր արկածներով շուրջերկրյա ուղևորությունից վերադարձող ճամփորդի: Նա քրտնամխած էր, ցեխակոլոլ, պատառոտված:

— Ի՞նչ է պատահել,— կարեկցանքով հարցրեց Ծիմեկը:

Մացեկը հեկեկաց:

— Հարձակվեցին վրաս... քիչ առաջ: Մեկը հարձակվեց վրաս Նապաստակի պուրակում... Ծիմե՛կ,— աղաչեց Մացեկը,— դու պետք է ինձ օգնես: Նա, այդ տիպը, սպառնաց, որ դեռ կհանդիպի ինձ: Ես վախենում եմ...

Հանույքից Ծիմեկի ականջներն անգամ կարմրեցին, Մացեկը նրանից օգնություն էր խնդրում, Մացեկը, որ դեռ երեկ «վայ-սիշշիկ» էր կոչում նրան: Հավատալը չի գալիս:

— Ես ուրախությամբ կօգնեմ,— ասաց Ծիմեկը շինծու անհոգությամբ,— բայց ինչպե՞ս: Քեզ ուղեկցեմ տո՞ւն:

Մացեկը աղերսանքով ծալեց ձեռքերը:

— Բանն այդ չէ: Դու գտի՛ր այդ խուլիգանին:

— Ախ, այդպե՛ս,— Ծիմեկը վերցրեց ինքնահոսն ու սկսեց դրա հետ խաղալ,— լավ, կփորձեմ: Բայց նախ պատմի՛ր, թե ինչպես եղավ, ինձ անհրաժեշտ է մանրամասնություններ իմանալ:

Հարկ չեղավ պնդել:

— Այսպես ուրեմն,— սկսեց Մացեկը,— ես Զալյոտում էի՝ տատիս մոտ: Նա պովիդլոյով բլիթներ էր թխում, և ես չնկատեցի էլ, թե ինչպես մթնեց: Վերադառնում էի այնտեղից Նապաստակի պուրակով: Հենց բացատ դուրս եկա, մեկը դուրս թռավ մի մեծ քարի ետևից և հարձակվեց վրաս: Ես չտեսա, թե ով է, որովհետև մութն էր և նա էլ՝ դիմակով: Սկսվեց տուրուդմփոց: Ես մի քանի ապտակ կերա ու կոճակս էլ կորցրի: Տեսնո՞ւմ ես: Թելն է միայն մնացել: Նա էլ, իհարկե, իրենն ստացավ: Ես նրա գրպանը պոկեցի և պատռեցի ինչ-որ կանաչ տետր, որ նրա գրպանումն էր: Հենց դուրս պրծա նրա ձեռքից, փախա, իսկ նա գոռաց ետևիցս. «Մենք դեռ կհանդիպե՛նք»:

Ծիմեկի համար, երևում էր, ամեն բան պարզ չէր, և նա ճակատը կնճռոտելով՝ ասաց.

— Ո՞վ գիտեր, որ դու գնում ես տատիկիդ մոտ:

Մացեկը աչքը գցեց առաստաղին:

— Պետրիկ Գիլը,— հիշեց նա,— Յուզեկ Խայլցեժը, Անջեյ Վեչորեկը:

— Դրանցից որևէ մեկի վրա կասկածո՞ւմ ես:

— Չէ՛... չգիտեմ:

Ծիմեկը գլուխը տմբացրեց.

— Հասկանալի է: Բարեբախտաբար, այնպիսի բարդ գործ չէ, ինչպես ինձ սկզբից թվաց: Ես քեզ

# ...րտությունը



Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

կոգնեմ: Հա՛, ինչ էի ուզում հարցնել: Ցո՛ւյց տուր պոկված կոճակի թելը:

Մացեկը զարմացավ:

— Թե՞լը: Ահա՛...

Ծիմեկը ուշադիր նայեց կոճակի տեղը, նորից մռայլվեց և հայտարարեց.

— Եղա՛վ: Առայժմ այսքանը: Վաղը ես մինչև դասերը վազ կըտամ Նապաստակի պուրակը և հետո արդեն կարող եմ քեզ ասել, թե ով է եղել խորհրդավոր հարձակվողը: Ցը: Մինչև վաղը:

Մացեկը տատանվեց, ուզեց դարձյալ ինչ-որ բան հարցնել, բայց չհարցրեց:

— Մինչև վաղը,— ասաց նա,— շատ շնորհակալ եմ քեզնից:

Երբ նրա ետևից դուռը ծածկվեց, Ծիմեկը խորհրդավոր ժպտաց:

Հետևյալ առավոտյան նա վաղ վեր կացավ և շտապեց Նապաստակի պուրակը, որ մի փոքրիկ անտառակ էր, ընկած Զապյոտ գյուղի և այն քաղաքի միջև, ուր ապրում էին մեր հերոսները:

Ծիմեկը անտառեզրին կանգ առավ և համոզվելով, որ իրեն հետևող չկա, ոլորապտույտ արահետով գնաց դեպի բացատ: Բացատի մեջտեղը ընկած էր մի մեծ գլաքար: Ծիմեկը մոտեցավ քարին և դիտեց: Առաջին բանը, որին նրա աչքն առավ՝ կանաչ տեսրի շապիկի պատառիկ էր: Այն ընկած էր հենց քարի կողքին և ասես խնդրում էր, որ իրեն վերցնեն:

— Վատ սկիզբ չէ,— քրթմնջաց Ծիմեկը, վերցնելով թղթի կտորը և սուլեց. տետրի շապիկի վրա գրված էր «Յուզեկ Խալցեժ, 6-ի «Ա» դասարան»:

Ծիմեկը երկար դիտեց գրածը և զարմացած բացականչեց.

— Հետաքրքի՛ր է... Շա՛տ հետաքրքիր է...

Նա թղթի կտորը գրպանը դրեց և կանաչների վրա չոքեչոք ամբողջ բացատը հետախուզեց: Եվ գտավ Մացեկի բաճկոնի կոճակը՝ այն, ինչը որոնում էր: Եվ տեղավորեց դրամապանակի մեջ:

Երբ Ծիմեկը դպրոցի շեմից ոտքը ներս դրեց, ժամացույցը ցույց էր տալիս ութից տաս պակաս: Ծիմեկն ուզեց մինչև դասըն սկսվելը մտնել 6-ի Ա.-ն և հաղորդել հետաքննության արդյունքը, բայց փոշմանեց և գնաց իր դասարանը: Պարզվեց, որ Մացեկը նրան սպասում էր այստեղ: Երևում է, նա արդեն իր արկածի մասին պատմել էր, որովհետև երբ Ծիմեկը ներս մտավ, խոսակցությունն ընդհատվեց: Ծիմեկին շոյեց հետաքրքրությունը իր անձի նկատմամբ, բայց զսպեց իրեն և ոչինչ չասաց.

— Դու իմացա՞ր, թե այդ ով էր,— լռությունը խզեց Մացեկը:

Ծիմեկը պայուսակը նետեց նըստարանին, թաշկինակով ճակատը սրբեց, հայացքով գտավ Յուզեկ Խալցեժին և նոր միայն պատասխանեց.

— Այո՛, իմացա՛:

— Ո՞վ է:

Նրանք նայեցին իրար, ինչպես ըմբիշները մենամարտից առաջ:

— Նրա անունը Մացեկ Բեցելյա է:

Մացեկը մի պահ շշմած կանգնեց, ապա սլացավ Ծիմեկի վրա:

— Ի՞նչ ես դուրս տալիս, ես ի՞նքըս եմ ինձ վրա հարձակվել:

Ծիմեկն անդրդվելի էր.

— Ոչ մի հարձակում չի եղել, դու հնարել ես:

Մացեկը աչք ածեց շուրջը և շփոթված ժպտաց:

— Տեսնո՞ւմ եք դուք սրան, ես հնարել եմ, թե հարձակվել են վրաս, որ ի՞նչ...

— Շատ պարզ,— հանգիստ ասաց Ծիմեկը,— որպեսզի ինձ վրա ծիծաղեցնես: Ուզեցիր ապացուցել, որ ես վայ-սիշշիկ եմ, ճի՞շտ եմ ասում:

Մացեկը կարմրեց:

— Դավաճան,— նետեց նա Յուզեկ Խալցեժին:

Յուզեկը ուզեց հարձակվել, բայց Ծիմեկը ձեռքի շարժումով կանգնեցրեց նրան:

— Քեզ ոչ ոք, Մացե՛կ, չի դավաճանել, քեզ մատնեցին քո սեփական սխալները:

Մացեկը սաստիկ հիմար տեսք էր ընդունել:

— Ի՞նչ սխալներ,— քրթմնջաց նա:— Ես ոչ մի սխալ չեմ արել:

— Դե լսի՛ր. սխալ առաջին. դու ասացիր, որ քեզ վրա հարձակվողի գրպանից հանել ես կանաչ տետր: Ինձ զարմացրեց, թե դու ի՞նչ իմացար, որ տետրը կանաչ է, չէ՞ որ անտառում մութն էր, նույնիսկ խուլիգանին չէիր կարողացել տեսնել: Նշանակում է, դու նախօրոք գիտեիր, թե տետրն ինչ գույնի է: Դըրանում ինձ համոզեց քո երկրորդ սխալը: Դու ասացիր, որ կռվի ժամանակ կոճակդ կորցրել ես: Կարող էր լինել: Հարձակվողը կարող էր քաշքշոցի ժամանակ կոճակ պոկել, համաձայն եմ, բայց ոչ կտրել: Իսկ քո կոճակը կտրված է: Ինձ դրանում համոզեցին թելի՝ բաճկոնիդ վրա մնացած իդեալական հավասար ծայրերը: Այստեղից եզրակացություն. դու կոճակը կռվի մեջ չես կորցրել:

Ծիմեկը մի պահ լռեց, ասես ժամանակ տալով Մացեկին լսածի մասին մտածելու, և ապա շարունակեց.

— Երրորդ սայթաքումդ այն է, որ դու տետրի շապիկի կտորը տաքել ցցել ես, և նրա վրա սխալ ես գրել Յուզեկի ազգանունը՝ «Խայլցեծ»-ը գրել ես առանց յ-ի: Այս սըխալը անհերքելի ապացույց է այն բանի, որ տետրը Յուզեկին չի պատկանում, չի կարող պատահել, որ նա իր ազգանունը սխալ գրի: Այդտեղ ես հիշեցի, որ դու Յուզեկի անունը հիշեցիր այն մարդկանց թվում, որոնք գիտեին քո՝ տատիդ մոտ գնալու մասին, և այլևս կասկածի տեղ չմնաց. այս ամբողջ պատմությունը դու հորինել ես: Ես սրանում համոզված եմ:

Անցավ մի քանի րոպե, մինչև Մացեկը լսածը մարսեց:

— Դու ճիշտ ես: Ես ամբողջը հորինել եմ,— խոստովանեց նա:

Հանկարծ բոլորն աղմկեցին:

— Ես միայն մի բան չեմ հասկանում: Թե դու ինչո՞ւ ես այս գործի մեջ խառնել Յուզեկին:

Յուզեկը, որ նստած էր անկյունում, վեր թռավ տեղից:

— Մենք գրազ էինք եկել,— բացատրեց նա,— Մացեկն ասաց, որ ինքը այնպիսի բան կհորինի, որ դու երբեք չես կարողանա գլուխ հանել: Եվ մենք գրազ եկանք: Մատիտ սրելու դանակի վրա: Ահա և ես գրազը տարա:

Յուզեկը սպասողական նայեց Մացեկին: Սա գրպանից հանեց սադափե շրջանակով դանակը, նետեց ափի մեջ և մեկնեց Յուզեկին:

— Վերցրո՛ւ:

Դասարանում աննկարագրելի աղմուկ բարձրացավ: Ծիմեկին բոլորը ծափահարեցին: Նրան կոչեցին «Հոլմսի ժառանգորդ», «Խելացի գլուխ», «Դասարանի հպարտություն»... Այս աղմուկի մեջ Մացեկը չքվեց:

Ծիմեկի նոր հաղթանակի լուրը արագ տարածվեց դպրոցով մեկ: Նրան շնորհավորում էին, հարցուփորձ անում, ուսին թփթփացնում: Ցածր դասարանի երեխաները երջանկությունից հուզվում էին, երբ Ծիմեկն իրենց հետ խոսում էր: Աղջիկները ժպիտներ էին պարգևում նրան: Վեցերորդ «Բ»-ն Ծիմեկի փառքի մեջ լողում էր, չէ՞ որ իրենք էին հայտնաբերել նրա կրիմինալիստական՝ քրեագիտական տաղանդը: Կատարվածով չէր ոգևորված միայն վեցերորդ «Ա»-ն: Նա տխրել էր Մացեկի և իր սեփական պարտության համար:



— Սսկվեցին,— ասաց ինձ Ծիմեկը,— էլ ձեռ չեն առնի ինձ, համոզվեցին, որ բան եմ հասկանում:

Ես նայեցի նրա հրճվալից դեմքին, ուրախացա նրա հետ. լավ հասկացա նրան: Ես գիտեի, թե որքան թանկ է նրա համար այդ փառքը: Ախր մինչև ինքնահոս գրիչների պատմությունը, դպրոցում բոլորը նրան վերաբերվում էին հեգնանքով, իբրև թե, տեսեք այս խելառին, գրքերից դուրս աշխարհ չի տեսնում, անխելք է, դանդալոշ: Ֆուտբոլի գնդակ բռնել չգիտե՛ր, տուրուդըմփոցի չէր խառնվում... Այդպիսին էր հինգերորդ, չորրորդ, երրորդ դասարանում: Եվ հանկարծ այսպիսի կերպարանափոխություն:



— Շնորհավորում եմ, Շերլո՛կ,— ասացի նրան նաև ես,— դու քեզ գերազանցեցիր:

Նա ծիծաղեց, ես՝ նույնպես: Մտքներովս չէր անցնում, որ այդ փառքը տևական չի լինելու, որ շուտով դերերը փոխվելու են և հաղթանակ է տանելու վեցերորդ «Ա»-ն:

Հենց այդպես էլ եղավ: Եվ ես այնպե՛ս եմ խղճում Ծիմեկին: Չեմ կարող տեսնել, թե ինչպես են նրան ծաղրում վեցերորդ «Ա»-ի տղաները:



— Հը՞, հերո՛ս: Ամուր Ձեռքի վրա ատամներդ փշրեցի՞ր: Ժամանակից շատ շուտ քիթդ տնկել էիր: Տեսնո՞ւմ ես, այնքան էլ հեշտ բան չի սիշշիկ լինելը:

Ես ախր «Ամուր Ձեռքի» գործը գիտեմ նույնքան լավ, որքան ինքը՝ Ծիմեկը, և կարող եմ երդվել, որ վեցերորդ «Ա»-ն իրավացի չէ: Նրանք անտեղի տեղն են Ծիմեկին վիրավորում:

(Վերջը՝ հաջորդ համարում)

# ՀԱՐԱՎՍԼԱՎԻԱՅԻ ՏԱՐԵԳՐՈՒԹՅՈՒՆԻՑ

*ՍՏԵՓԱՆ ԿՈՒՐՏԻԿՅԱՆ*



1

Անցյալ տարի Բելգրադում ես ծանոթացա սերբ գրող Բրանիսլավ Քոսիերին:

— Գիտե՞ք առաջին անգամ ով է ինձ ծանոթացրել հայերին,— ասաց նա,— Ֆրանց Վերֆելը: «Մուսա լեռան քառասուն օրը» կարդալով, ես ծանոթացա հայության ճակատագրին և սրտիս շատ մոտ զգացի իր գոյության համար պայքարող ձեր ժողովրդին: Չէ՞ որ նույն դժվարին ճակատագիրն է ունեցել նաև մեր ժողովուրդը՝ չարիքի դեմ ըմբոստացել է, անվերջ կռիվ մղել օտար զավթիչներից հայրենիքն ազատագրելու համար: Ֆրանց Վերֆելի վեպը Հարավսլավիայում, նախքան Երկրորդ համաշխարհային պատերազմը, ունեցել է հինգ հրատարակություն: Այդ վկայում է, որ թե Հարավսլավիայի ժողովուրդը ինչքա՞ն է սիրել այն: Սակայն դա լոկ գրքային ծանոթություն էր: Կյանքում, անմիջական շփումով, հային ես ճանաչեցի հիտլերյան ֆաշիզմի դեմ պարտիզանական պայքարի ծանր օրերին: Դուք լսե՞լ եք Մեծիկյան ազգանունով ձեր հայրենակցի մասին: Վարուժան Մեծիկյան...

— Վարուժան Մեծիկյա՞ն: Երբեք չեմ լսել: Բելգրադի՞ց էր:

— Ո՛չ նա Մակեդոնիայից էր:

— Իսկ ինչպե՞ս էր հայտնվել սերբ պարտիզանների մեջ:

— Նա Հարավսլավիայի ազգային-ազատագրական բանակի գնդապետ էր, խիստ տպավորիչ արտաքինով, շողարձակ սև աչքերով, գռուզ բեղերով, տոկուն ու անսասան: Չգիտեմ ե՞րբ և որտեղի՞ց էր եկել Մակեդոնիա ու այնտեղ բնակություն հաստատել: Կարող եմ միայն վկայել, թե նա մեր՝ պարտիզաններիս հեղինակավոր հրամանատարն էր: Իր հետ էր երիտասարդ որդին, որի անունը, դժբախտաբար, հիմա չեմ հիշում: Նրա հրամանատարությամբ ես, տակավին պատանի, մասնակցել եմ մի քանի գործողությունների: Մենք՝ պարտիզաններս միշտ այն հաստատ համոզմանն էինք, որ եթե մեր գլխին կանգնած է Մեծիկյանը, ուրեմն ամեն ինչ հաջող կընթանա, նա մեզ դժոխքից էլ դուրս կհանի: Դա այդպես էր:

Մի անգամ ֆաշիստները շրջապատել էին մեզ և հետզհետե սեղմում էին պաշարման օղակը: Թվում էր, թե այլևս անխուսափելի էր կործանումը, ինչքան էլ լեռնային տեղանքի ժայռեղեն զանգվածները մեզ պաշտպանեին: Մեծիկյանը, այնուամենայնիվ, մեր հույսն էր: Նա պողպատի նման անթեք ու պողպատագույն դեմքով, աչքերից սև բոց արձակելով, հանդարտ, ինքնավստահ շրջում էր պարտիզաններիս մեջ ու խստորեն պահանջում.

— Խնայե՛լ փամփուշտը: Մի փամփուշտ՝ մի ֆաշիստ...

Արդեն մթնում էր, երբ դադարեց փոխհրաձգությունը: Մենք գիտեինք, որ ֆաշիստները գիշերը գործողություններ չէին ձեռնարկի: Իրենք գիշեր էին լուսավոր աշխարհի վրա, բայց սաստիկ վախենում էին գիշերից: Հասկանալի է, շատ ջախջախիչ հարվածներ ստացել էին գիշերները: Նրանք իրենց ուժերը կենտրոնացրել էին անտառային գոտում, որպեսզի մենք՝ պարտիզաններս, չկարողանայինք գիշերով գրոհել, անտառ թափանցելով՝ փրկվել ջախջախումից: Մենք նկատել էինք, որ թշնամին խրամատավորվում ու ամրացնում է անտառի բոլոր մատույցները: Ինչպե՞ս դժվար պիտի լիներ մեր գործը: Բայց տարօրինակն այն էր, որ մեր հրամանատար Մեծիկյանը այդ բոլորին ուշադրություն չէր դարձնում.

— Է՞, խրամատավորվում են, թող խրամատավորվեն, անտառի մուտքը բոլոր կողմերից փակում են, թող փակեն...

Ի՞նչ էր նշանակում այս հանգստությունն ու անտարբերությունը:

Հազիվ էր խավարը ծածկել շուրջ բոլորը, երբ հրաման ստացանք.

— Հանգստանալ, քնել երկու ժամ, պահակային խիստ հսկողություն սահմանելով:

Հոգնած, ուժասպառ պարտիզաններս անմիջապես օգտվեցինք այդ հրամանից: Մեր բաղձանքն էլ այդ էր՝ երկու օր երեք ան-քուն մնալուց հետո քաղցր քուն մտնել: Ուրեմն, երկու ժամից գրոհի հրաման էր լինելու: Պարզ է, ֆաշիստները անակնկալի չէին գալու: Նրանք ավտոմատային ու գնդացրային կրակով էին դիմավորելու մեզ: Մեծ զոհերի գնով միայն կարող էր հաջողվել մեզ ճեղքել թշնամու պաշտպանությունն ու խորանալ փրկարար անտառի մեջ: Իսկ լուսանալուն պես, թշնամին գերազանց ուժերով, իր ամբողջ ռազմական տեխնիկան օգտագործելով, կարող էր մեզ լիովին բնաջնջել: Սակայն մենք՝ պարտիզաններս, երկար չմտածեցինք մարտական գործողությունների մասին, ուզեցինք վայրկյան առաջ վայելել քնի քաղցրությունը: Դե՛, հրամանատար Մեծիկյանը կենդանի էր ու արթուն, նա կմտածեր...

Երկու ժամ հետո, երբ դժվարությամբ զարթնում էինք քաղցր քնից, հրաման էինք ստանում՝ անշշուկ նահանջել ետ՝ գետափ, կամրջի մոտ, որը մեզանից 8-10 կիլոմետր հեռավորության վրա էր գտնվում: Մենք անմիջապես կռահում էինք հրամանատարի հանդուգն որոշումը. գիշերով կամուրջն անցնել ու ոտք դնել վտանգավոր դաշտավայրը, ուր, սակայն, թշնամին հնարավորություն ուներ գլխովին ջախջախել մեզ: Բայց արագ երթով այդ տարածությունը կարելի էր անցնել մի քանի ժամում և շրջանցը կատարելով, լուսադեմին հասնել մի այլ անտառամաս: Նման









գործողությունը բոլորովին անակնկալ էր թշնամու համար։ Հետագայում ես իմացա, որ գնդապետը հետախուզությամբ վերջնականապես պարզել էր, որ թշնամին դաշտավայրի ճանապարհը չէր փակել՝ վստահ, որ բաց դաշտավայրում մահ գտնելու երկյուղը պարտիզաններին ետ կպահի։

Այսպես, առանց կրակոցի մենք անցանք կամուրջը, արագ երթով հեռացանք դաշտավայրից ու շրջանց կատարելով, հասանք փրկարար անտառները՝ մեր ճանապարհին ոչնչացնելով անակընկալի եկած ու պահակակետերում ծվարած ֆաշիստներին։

Մի այլ անգամ մեր պարտիզանները գիշերային անակնկալ հարձակումով պետք է ոչնչացնեին դաշտավայրում գտնվող ֆաշիստական կայազորը, տիրանային կայազորի ռազմամթերքին ու սննդամթերքին։ Այդ նպատակով գնդապետը պարտիզանական հատուկ հարվածող ջոկատ առանձնացրեց և ջոկատի գործողության հրամանատարությունը հանձնարարեց իր ջահել որդուն։ Պարտիզաններից ոմանք նրա այդ որոշման դեմ դուրս եկան։ Սակայն իր որոշման մեջ գնդապետը մնաց անդրդվելի։ Նա հանձնարարություններ ու խորհուրդներ տվեց որդուն, հատուկ ջոկատի երիտասարդ պարտիզաններին, հաջողություն մաղթեց նրանց, ապա պինդ-պինդ սեղմեց բոլորի ձեռքերը, ամուր-ամուր գրկեց ու համբուրեց որդուն ու ճանապարհ դրեց...

Գիշերը բոլորս էլ անհանգիստ քնեցինք։

Արդյոք, անվտանգ տեղ հասա՞ն մերոնք։ Արդյոք, հաջո՞ղ անցավ մարտական գործողությունը։ Մտահոգ ու անհամբեր սպասում էինք մերոնց վերադարձին։ Ահա աղջամուղջը կամաց-կամաց ցրվում էր և լեռնագագաթները սկսում էին պարզվել։ Իսկ մերոնք տակավին չէին երևում։ Արդյո՞ք, կայազորի մոտակայքում հանկարծ ֆաշիստական նոր ժամանած ուժերի էին հանդիպել։ Թշնամին հաճախ էր զորաշարժեր կատարում։ Սատանան գիտե։ Անհամբեր մի քանի պարտիզաններ մոտեցան գնդապետին լրացուցիչ կերպով հետախուզության գնալու խնդրանքով։ Սակայն այդ միջոցին ժամապահները լուր բերեցին, թե լեռնային լռության մեջ լսվում է ձիերի ոտնադոփյուն և մերոնք ուր որ է կհայտնվեն։ Ուրախալի այդ լուրը վայրկենաբար տարածվեց ճամբարով մեկ, բարի լույս բերեց սննդի և ռազմամթերքի նեղություն կրող ճամբարայիններին։ Շատ անհամբերները ընդառաջ գնացին եկողներին։ Երևացին սննդամթերքով ու ռազմամթերքով բեռնավորված ձիեր։ Ուրեմն, գործողությունը հաջող էր անցել։ Բայց ահա այդ տոնական ուրախության ետևից գալիս էր սև սուգը... Սա ի՞նչ սարսափելի բեռ էր ձիերի վրա։ Անշնչացած երեք երիտասարդ պարտիզանների աճյուններ ու նրանց մեջ... գնդապետի որդին։

— Կա՛նգ առեք, ընկերնե՛ր, կա՛նգ առեք. գնդապետին պետք է նախապատրաստել այս ողբերգությանը...— լսվեց կերկերուն մի ձայն ու ձիերը կանգ առան...

Մենք իջեցրինք զոհվածների մարմինները։ Արտասուքը խեղդում էր մեզ։

Գնդապետը կռահել էր ծանր եղելությունը։ Որդին չկար, որ մարտական հրամանը կատարելու մասին զեկուցեր ու գրկախառնվեր հոր հետ...

# ԱՇԱԿԵՐՏՆԵՐԻ ՕԳՆՈՒԹՅԱՄԲ



Ինչպես խոստովանում են համայնքապետության տնտեսությունների ղեկավարները, առանց աշակերտական-արտադրական բրիգադների օգնության անհամեմատ դժվար կլինի բերքը ժամանակին և անկորուստ հավաքելը:

Հոկտեմբերյանի № 6 միջնակարգ դպրոցի սաները անցյալ տարի հավասարապես օգնում էին թե՛ Հոկտեմբեր գյուղի տնտեսությանը, թե՛ պահածոների գործարանին: Չորս դասարանների աշակերտների ուժերով հավաքվեց երկու տոննա խաղող և վեց տոննա լոլիկ:

Ամեն տարի վաղ ամռանից նրանք մասնակցում են լոլիկի, վարունգի, եգիպտացորենի մշակման աշխատանքներին:

ՆԿԱՐՈՒՄ.— Հոկտեմբերյանի №6 դպրոցի սաները լոլիկի բերքահավաքի ժամանակ:

*Լուսանկարը՝ ԶԱՎԵՆ ԲԵՏԻԿՅԱՆԻ*




# ԵՐԳԻ ՈՒ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԲԱՐԻ ԶԱՎԱԿԸ



Նա ոչ միայն իրենց՝ Մեծ Սեպասար գյուղի, այլ ողջ Ղուկասյանի շրջանի առաջին աղջիկ մեխանիզատորն է: Յոթերորդ դասարանի աշակերտուհի է: Ամբողջ ամառն աշխատել է դաշտում, դասընկերներից շատերին օրինակ տվել ու ոգևորել, տարել դաշտ:

— Ամռանը Հերմինեն երեք հազար տոննա խոտ է տեղափոխել,— հպարտությամբ ընդգծում են տնտեսության ղեկավարները և ավելացնում, որ դա գերազանցում է մեծերի համար նախատեսված նորման:

Լավ աշխատելուց բացի, Հերմինե Հակոբյանը նաև ուսման առաջավոր է, դպրոցական միջոցառումների ակտիվ կազմակերպիչներից: Նա ջոկխորհրդի նախագահի պարտականություն է կատարում, մասնակցում է այլ խմբակների պարապմունքներին և... և հիանալի ձայն ունի: Պետք է լսել, թե ինչպես է նա կատարում ժողովրդական ու ժամանակակից երգերը՝ պատկերացում կազմելու համար նրա երաժշտական օժտվածության մասին:

— Ի՞նչը քեզ տրակտորի ղեկի մոտ բերեց,— հարցնում եմ նրան:

— Փոքրուց սիրել եմ այդ գործը: Հայրս հմուտ մեխանիզատոր է: Նրանից էլ սովորեցի և գիտեմ, որ ճիշտ եմ վարվել: Մնում է միայն խորանամ այդ գործի մեջ, ինչպես ասում են, լավ հասկանամ տրակտորի լեզուն, որպեսզի դժվարությունների առաջ չկանգնեմ,— ժպտում է ու արգելակման ոտնակը թողնելով, սուրում առաջ:

Քիչ անց, տրակտորի ընդհատ-ընդհատ աղմուկի միջից երգի անուշ պատառիկներ են հասնում մեր ականջին: Բարի ճանապա՛րհ քեզ՝ երգի ու աշխատանքի բարի զավակ: Նաև խաղաղ երկինք քեզ, որ քո ձայնը միշտ և անարգել զնգա հայրենի դաշտերում:

*ԱԼԻՍԱ ԿԻՐԱԿՈՍՅԱՆ*

*Ղուկասյան*




Գեորգինայի պալարների պարունակած շաքարը իր քանակությամբ շատ քիչ է տարբերվում ճակնդեղի պարունակածից։ Մասնագետները գտնում են, որ բացառված չէ այն հնարավորությունը, որ հետագայում այդ գեղեցիկ ծաղկի պալարներից ստանան շաքար։



Հնդկական օվկիանոսի Սեյշելյան կղզիներում աճում են ընկույզներ, որոնց քաշը հինգից տասը կիլոգրամի է հասնում։ Երբեմըն նրանք կշռում են 25 կիլոգրամ։ Այդ ընկույզների տրամագիծը հասնում է մեկ մետրի։ Այդպիսի ընկույզներին տասը տարի է պետք հասունանալու համար, սակայն մեկ տարեկան ընկույզները միանգամայն պիտանի են ուտելու համար և տեղի բնակիչները սովորաբար ուտում են այդ չհասած պտուղների դոնդողանման դեղին միջուկը, որը ունի կաղինի համ։

Շատ լեգենդներ են ստեղծվել այդ զարմանալի պտուղների շուրջը, իսկ անցյալում՝ սնահավատությունը վերագրել է նրանց կախարդական ուժ։



Արևադարձային երկրներում կա մի բույս, որին բնիկները անվանում են «հազացող ծաղիկ»։ Երբ նրա տերևների վրա հող է ընկնում, բույսի տերևները ուռչում են և հողը թափվում է նրանց վրայից, լսվում է թույլ ձայն, որը նման է հազի։



**Քրիստափոր Կոլումբոսի նավաստիները, երբ 1492 թվականին մի անհայտ ափ դուրս եկան, տարօրինակ բույս նկատեցին՝ երկար ցողուններով։ Նրանց շատ զարմացրեց հատիկների չափսերը, որոնք շատ խիտ նստած էին հաստ կողրի վրա։ Ամերիկայից բերված հատիկները շուտով տարածվեցին Իսպանիայում, Իտալիայում, Բալկաններում, Տաճկաստանում, իսկ տասնյոթերորդ դարում նաև Ռուսաստանում։**

**Այդ բույսը եգիպտացորենն էր։**

Նկ. ԱՇՈՏ ԲԱՅԱՆԴՈՒՐԻ




# Իսկական և «ոչ իսկական» ընկերուհիներ

Էմման և Արմինեն մտերիմ ընկերուհիներ էին, դասարանում ուրիշների հետ ընկերություն չէին անում։ Մի անգամ Էմման դասի չէր եկել, և դասընկերները ուզեցին Արմինեից իմանալ նրա բացակայության պատճառը։ Արմինեն հարկ չհամարեց ասել։ Անցավ ևս երկու օր, Արմինեն շարունակում էր լռել։ Մյուս ընկերուհիները որոշեցին այցելել Էմմային։ Էմման այդպիսի վերաբերմունք չէր սպասում և իրեն շատ մեղավոր զգաց նրանց առաջ։ Երբ ապաքինվեց ու դպրոց եկավ, բակում նկատեց իր այդ դասընկերուհիներին, որոնցից քիչ այն կողմ կանգնած էր Արմինեն։ Էմման Արմինեին մոտենալուց առաջ, նրանց բոլորին բարևեց և այդ օրվանից ընկերություն է անում բոլորի հետ։

ՀԵՐՄԻՆԵ ԱՄԻՐԽԱՆՅԱՆ
Աբովյան



# Վիվալդիի երաժշտության ներքո

Այս տարի լրանում է Վիվալդիի ծննդյան երեք հարյուրամյակը, իսկ նրա ստեղծած երաժշտությունը այսօր նույնքան երիտասարդ ու հմայիչ է, որքան այն ժամանակ, երբ առաջին անգամ հնչում էր հարազատ Վենետիկի ժողովրդական տոնահանդեսներում:

Վիվալդին վանական էր, և եկեղեցու հայրերի սրբտովը չէր իրենց տարօրինակ «եղբայրը», որը վիրտուոզ ջութակ էր նվագում և հորինում «աշխարհիկ» երաժշտություն: Եվ Վիվալդին աստծու և երաժշտության միջև ընտրություն կատարելիս ընտրեց վերջինը: Նրա բազմաշնորհությունը ցնցում էր բոլորին, իսկ աշխատունակությունն ուղղակի բացառիկ էր (ասում էին, որ նա կարող էր կոնցերտ հորինել ավելի արագ, քան պատճենահանողը կհասցներ արտագրել այն): Վիվալդին գրել է 784 կոնցերտ, 22 սիմֆոնիա, 78 սոնատ, մի քանի օպերա, ինչպես նաև 94 թատերական ներկայացումների համար երաժշտություն: Ավա՜ղ, նրա ճակատագիրը չտարբերվեց շատ տաղանդների բաժին հասած ճակատագրից: Նա մահացավ աղքատության ու օտարության մեջ, իսկ նրա երաժշտությունը շուտով մոռացության մատնվեց: Միայն երկու հարյուր տարի անց կոմպոզիտորին «հայտնագործեց» Մենդելսոնը:

Ինչ վերաբերում է մեր ժամանակներին, ապա Վիվալդիի երաժշտության ձայնասկավառակները Իտալիայի երիտասարդական բարերում ամենից հաճախ լսվողներից են:



# ՈՒԻԼՅԱՄ ԲԼԵՅՔ

ՌՈՒԲԵՆ ԱՆՂԱԼԱԹՅԱՆ

Նա այդպես էլ գերեզման չունեցավ, ճիշտ Լորկայի նման: Նա թաղվեց աղքատների համար փորված ընդհանուր փոսում, Լոնդոնի հաշվին: Ոչ որ նրան ո՛չ բանաստեղծ, ո՛չ էլ նկարիչ չէր համարում: Նրա մասին խոսում էին որպես խելագարի:

... Այժմ նրա պատվին աշխարհի տարբեր երկրներում ընկերություններ են հիմնում, ցուցահանդեսներ են կազմակերպում, աճուրդասրահներում նրա ձեռագրերի թերթիկները կամ նկարները աստղաբաշխական գներով են վաճառվում: Անգլիական գրականության մեջ սա հանաչման չարժանանալու միակ դեպքն է: Միակը և ամենաողբերգականը:

Ուիլյամ Բլեյկը ծնվել է 1757 թվականի նոյեմբերի 28-ին ժանրավաճառի բազմանդամ ընտանիքում: Նրա մանկությունն ու պատանեկությունը վատ դասավորվեցին, որը շատ բանով ազդեց նրա հետագա ստեղծագործական ուղու վրա:

Գրել և նկարել Բլեյկը սկսել է վաղ մանկությունից: Տեսնելով նրա ընդունակությունները, ծնողները, գիտակ մարդ-

## ԵՐԱԺՇՏՈՒԹՅԱՆ

1978 թվականի ամռանը Ճապոնիայում ամենամեծ ժողովրդականությունը վայելում էր «Ալեքսախություն» անսամբլի «Ալեքսախություն Ցամայկա կղզում» անունը կրող ձայնասկավառակը: Դեռ ոչ մեկին չի հաջողվել տեսնել այդ անսամբլին, որովհետև այն փաստորեն գոյություն չունի բնության մեջ: Ավելի ճիշտ բնության մեջ այն կա, բայց իրականում գոյություն չունի, որովհետև բոլորովին էլ երաժշտական անսամբլ չէ, այլ ուղղակի Ցամայկա կղզու Մոնտեգո-Բեյ ծովախորշում

կանց խորհրդով, տասնամյա տղեկին նըկարչական դպրոց տարան։ Սակայն ուսման վարձը Բլեյկների համեստ և բազմանդամ ընտանիքի ուժերից վեր էր, և տղային դպրոցից հանեցին։ Հետագայում նա ընդունվեց փորագրման արվեստանոց, որտեղ նա ոչ միայն փորագրողի արհեստ սովորեց, այլև աշխատեց որպես բանվոր։ Ուիլյամի ուսուցիչը հարգարժան, փոքրինչ ձանձրալի, սակայն ազնիվ վարպետ Ջեմս Բեզայրն էր։

1779 թվականին Բլեյկը ավարտում է ուսումը և սկսում է աշխատել հրատարակիչների համար։ Պատանի նկարիչը իր օրվա հացը վաստակում է անցյալի վարպետների ստեղծագործությունները պատճենահանելով։Հենց այդ ժամանակ էլ ըսկսում է լրջորեն բանաստեղծություններ գրել։ Զգայուն պատանին քնարերգությանն է դիմում։ Այդ տարիների բանաստեղծությունները լի են լուսաբացի ծաղիկների բուրմունքով, քամու մեղմ սոսափյունով, կրքով և անկեղծ խոստովանություններով։ Ուիլյամի ընկերները հավաքում են նրա բանաստեղծությունները և իրենց հաշվին տպագրում։ Առաջին գիրքը «Բանաստեղծական ուրվագծեր» էր կոչվում։ Սակայն այդ տաղանդավոր և անսովոր գրքույկը հաջողություն չունեցավ և աննըկատ մնաց։ Ուիլյամը շարունակում է գրել և երազում է իր ստեղծագործությունները տպագրված տեսնել, սակայն ոչ մի հրատարակիչ չի համարձակվում դրանք տպել։ Այն ժամանակ Բլեյկը ինքն է սկսում դրանք տպել, երբ արդեն փորագրման նոր ձև է գտնում։ Հատկանշալի է ուրեմն, որ գրքերի այն փոքրաթիվ օրինակները, որոնք տպվել և նախշազարդվել էին բանաստեղծի ձեռքով, իրարից տարբերվում էին։ Դրանք եղել և մնում են իր տեսակի մեջ եզակի։ Իսկ վերջին պոեմը Բլեյկը տպեց ընդամենը մեկ օրինակ։

Որպես նկարիչ Բլեյկը ցուցադրվում էր Գեղարվեստների ակադեմիայի ամենամյա ցուցահանդեսներում։ Այն ժամանակվա հայտնի գեղանկարիչներից մեկը ասում է, որ Բլեյկից գաղափարներ գողանալը շատ ձեռնտու է։ Բայց ինչո՞ւ նրան չէին նըկատում։ Ինչո՞ւ էր նա դուրս մնում պաշտոնական գրականության և արվեստի սահմաններից։ Այս հարցերին կարելի է պատասխանել միայն այն դեպքում, եթե փորձենք գտնել նրա պոեզիայի և արվեստի գնահատողներին։

Ո՞վ և ե՞րբ աշխարհին ծանոթացրեց Ուիլյամ Բլեյկին։ Բնական և հետաքրքիր հարց։

Աղքատ և հանճարեղ Բլեյկի մահվանից 20 տարի անց, 1847 թվականին պարզ պատահականությամբ, անգլիական սիմվոլիստների ապագա գլխավորող, պոետ, Դանտեի նկարիչ Գաբրիել Ռոսսետտին, ընդամենը 10 շիլլինգով բուկինիստից գնեց Բլեյկի մի քանի տետրերը։ Այժմ այդ տետրերը հենց այդպես էլ կոչվում են՝ «Ռոսսետտիի մանուսկրիպտը» (հին ձեռագրերը)։ Ի՞նչը գրավեց Ռոսսետտիին Բլեյկի ստեղծագործության մեջ։ Նրան ապշեցրեց բանաստեղծական և տեսողական կերպարների ինքնատիպությունը։ Նա Բլեյկի մեջ տեսավ մեծ քաղաքացուն, մի անհատականություն, որը հաքստացրել է իր ժամանակը՝ նոր արվեստի ընձյուղներ տալով։ Նա Բլեյկի մոտ գտավ սիմվոլիզմի ակունքները, այսինքն այն, ինչը հուզում էր բանաստեղծների ու նկարիչների երիտասարդ սերնդին։ Ժամանակակիցների կողմից նրա չհասկացվելը բացատրվում էր նրանով, որ Բլեյկը իր ժամանակից առաջ էր անցել, որի համար էլ դաժանորեն պատժվեց։ Կիսաքաղց կյանքը և անտարբերությունը եղան նրա ողջ կյանքի ուղեկիցները։

Ինչպես վերևում արդեն նշվեց, Բլեյկի կոլեգաները նրա գաղափարները գողանում էին, այդ գաղափարները օգտագործում էին իրենց ցածրարժեք նկարներում, բայց մեծ նկարչի փայլուն տաղանդը չէին նկատում։ Միայնակություն, կատարյալ խավար, և ինչպես հետագայում կասեն նրա կենսագիրները «մասսայական կուրություն»։

Ահա ինչ է գրել նա իր ուրվագրերի տետրում. «Երեքշաբթի, 20-ը հունվարի 1807 թ. ժամը 2-ից մինչև երեկոյան 7-ը, հուսահատություն»։ Բայց նա աշխատում էր հաղթահարել իր հույզերը, նա հավատում էր... Անձնական կյանքում ծայր աստիճան համեստ լինելով, նա հասարակության և ընթերցողների անտարբերությունը իր ստեղծագործության նկատմամբ որպես անձնական վիրավորանք չէր ընդունում։ Բլեյկը իր եղբոր բնակարանում անհատական ցուցահանդես է բացում, և այդ ցուցահանդեսի համար գրում իր հայտնի «Նկարագրական կատալոգը»։ Բայց ավա՜ղ, ոչ մի այցելու։ Միաժամանակ նա գրում է իր հանճարեղ պոեմ-խորհրդածությունները, որոնք մինչև օրս էլ մնացել են չվերծանված, այնքան բարդ և անսովոր են այդտեղ արտահայտված գաղափարները, գրելաձևը։

Իր կյանքի մայրամուտին Բլեյկը ձեռնարկում է անգլիացի դասական Չոսերի գիրքը, յուրաքանչյուր փորագրանկարով տալով գրքի իր մեկնաբանությունը։ Բացի այդ, նա գիրքը օժտել է իր սեփական ծանոթագրություններով։ Եվ այժմ, այդ ծանոթագրությունները այդ պոետի՝ Չոսերի ստեղծագործության լավագույն հետազոտությունն են համարվում։

Մահվանից մեկ թե երկու տարի առաջ, Բլեյկը, արդեն ծերունի, որոշում է նկարազարդել Դանտեի «Աստվածային կատակերգությունը»։ Դրա համար որոշում է պոեմը կարդալ բնագրով։ Երեք շաբաթվա ընթացքում ուսումնասիրում է իտալերենը։ Նա ուզում է իր նկարազարդումները ստեղծագործության հետ ամբողջական կապի մեջ արտահայտել, որպես նրա անքակտելի մասը։ Բլեյկը հասցրեց կատարել միայն «Դժոխքի» նկարազարդումները։ «Դժոխքը» նրա կարապի երգը եղավ։

Այժմ, Վեստմինստերյան աբբայությունում՝ Անգլիայի ազգային պանթեոնում, նրա հուշարձանն է դրված, որպես մեծերի մեջ հավասարի։

1957 թվականին Խաղաղության համաշխարհային խորհրդի որոշմամբ նշվեց զարմանալի «աղքատի»՝ մեծ Ուիլյամ Բլեյկի ծննդյան 200-ամյակը

## ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

կատարված ծովի իսկական աղերախության ձայնագրություն։

Ձայնագրությունը միանգամայն պատահականորեն կատարել է ճապոնացի կինոօպերատոր Սիմպեյ Ասաին։ Սակայն այն այնքան է ճապոնացիներին դուր եկել, որ «Սոնի» ֆիրման ծովի ալիքների աղմուկը լրացնելով հավայան կիթառի նուրբ հնչյուններով, վաճառքի է հանել ձայնասկավառակը։

## ԹՈՒԹԱԿԸ

ՎԱՐԱԶԴԱՏ ԲԱԳՐԵՎԱՆԴՑԻ

Թութակն ասաց.— Խելքի ծով եմ,
Մարդկանց նման խոսել գիտեմ,
Սագի նման գիտեմ ճչալ,
Հավերի պես՝ գիլ կչկչալ,
Քուչիկի պես հաչել գիտեմ,
Ջրալու մեջ մեծ վարպետ եմ...

Բաղը սաստեց.—Ո՞վ դրացի,
Ամեն ինչ ես... քեզնից բացի։
Մեզ կապկում ես, կապկում, սակայն
Ոչինչ չունես դու սեփական։

## ԿՈԲՐԱՆ՝ ԳԻՇԵՐԱՅԻՆ ՊԱՀԱԿ

Ստոկհոլմի գազանանոցի ադմինիստրացիան նույն գազանանոցի բնակիչներից մեկի՝ թագավորական կոբրայի համար աշխատանք գտավ: Կոբրան գիշերային պահակ նշանակվեց այն շենքում, որտեղ ակվարիումներն ու տերարիումներն են տեղավորված: Շենքը փակելուց առաջ, հսկայական, հինգմետրանոց օձին բաց են թողնում շենքով մեկ ազատ սողալու:

Այս միջոցին են դիմել այն պատճառով, որ վերջերս հաճախակի է դարձել հազվագյուտ կրիաների, ակվարիումային ձկնիկների գողությունը: Շենքի մուտքի վրա հայտարարություն է փակցված, որ շենքը պահպանվում է կոբրայի կողմից: Կենդանիներ գողանալու դեպքերը վերացել են:



## ՇԱՀՈՂԸ ՍՏԱՆՈՒՄ Է ԻՇԽԱՆԻ ՁԵՌՔԸ

Ամեն զույգ տարվա սեպտեմբերի 9-ին, Հռոմից ոչ շատ հեռու գտնվող իտալական փոքրիկ Մարոստիկի քաղաքի բնակիչները հետաքրքիր սպորտային խաղի՝ «կենդանի շախմատի» հանդիսատես են դառնում, իսկ մի մասն էլ մասնակցում է այդ խաղերին: Երկու անձնախումբ միջնադարյան զինվորների, սպաների, պալատականների, թագավորների և թագուհիների հագուստներ հագած շարվում են Դե-Բաքկո դղյակի առջևի հրապարակի Շախմատի տախտակի սև և սպիտակ քառակուսիների վրա: Շախմատային պարտիան սկսվում է:

Այս սովորույթը ունի ավելի քան 500 տարվա պատմություն: Պատմում են, որ 1454 թվականին փոքրիկ քաղաքի երկու ազնվական պատանիներ սիրահարվել էին Դե-Բաքկո իշխանական դղյակի տիրոջ աղջկան: Առաջներում այսպիսի մրցակցությունը մենամարտով էր վերջանում: Բայց իշխանը լուսավորյալ անձնավորություն էր և իր իշխանապատկան հողում մեկընդմիշտ արգելել էր մենամարտը: Դրա փոխարեն նա մրցակիցներին առաջարկում է շախմատի մի պարտիա խաղալ, որտեղ շահողը որպես մրցանակ ստանալու էր իշխանի դստեր՝ Լեոնորայի ձեռքը: Մատչը տեղի ունեցավ դղյակի առջևի հրապարակում. ֆիգուրներով խաղում էին ծառաներն ու պալատականները: Իշխանադուստրը պարտիան շահողի կինը դարձավ, իսկ տանուլ տվողն ամուսնացավ նրա մեծ քրոջ՝ Օլդրադայի հետ:

Այս մրցման հիշատակին է նվիրվում երկու տարին մեկ կազմակերպվող շախմատային խաղը հրապարակի վրա. այն տեղի ունեցավ նաև անցյալ տարի:

## ՈՐՍՈՐԴՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ ԱՄԵՆԱՀԻՆ ԳԻՐՔԸ

— Որսորդության մասին մեզ հասած առաջին գիրքը մեր թվարկությունից 4 դար առաջ հույն պատմաբան Քսենոֆոնի գրած գիրքն է: Գրքում մեծ ուշադրություն է նվիրված շներով և ցանցերով կատարվող նապաստակի որսին, ինչպես և նիզակի օգնությամբ եղջերուի և վարազի որսին:

Տեղեկություններ կան որսորդական շների անեցման և վարժեցման վերաբերյալ, նկարագրված են նրանց մի քանի հիվանդություններ:

*Թարգմ. Ա. ՄԱՆԱՍՅԱՆԻ*

## Ի՞ՆՉ ԳՈՒՅՆ ՈՒՆԻ ԱՐՅՈՒՆԸ

«Կարմիր է արյան նման»,— ասում ենք մենք, և իսկապես, մարդկանց ու կենդանիների մեծ մասի արյունը կարմիր գույն ունի: Իր կարմիր գույնով արյունը պարտական է հեմոգլոբինին:

Բայց ահա ծովահրեշների և որոշ կակղամորթների արյան մեջ հեմոգլոբին չկա: Վերջինիս փոխարեն կա հեմոցիցին, որն էլ արյանը կապույտ երանգ է տալիս (ահա պարզվում է, որ կապույտ արյունը ամենևին էլ ազնվական ծագման նշան չէ, ինչպես մի ժամանակ կարծում էին արիստոկրատները):

Բնությունը բազմազանություն է սիրում և զարմանալի չէ, որ արյունը կարող է լինել ոչ միայն կարմիր կամ կապույտ, այլ նաև... սպիտակ:

Սպիտակ է Անտարկտիդայում ապրող «սառցե» ձկան արյունը: Եվ նա միակը չէ:

Բոլորովին վերջերս սովետական գիտնականները Հնդկական օվկիանոսում Կարգելեն կղզու մոտակայքում որսացին մի արտասովոր գայլաձուկ, որի արյունը ջրի պես թափանցիկ էր: Մեկ ուրիշ այդպիսի ձուկ բռնվեց Անտարկտիդայում, Բուվե կղզուց ոչ հեռու:

Այս ձկների արյան անալիզից պարզվեց, որ նրա մեջ չկա ո՛չ հեմոգլոբին, ո՛չ էլ էրիտրոցիտներ (արյան կարմիր գնդիկներ), իսկ երկաթ պարունակվում է տասն անգամ ավելի քիչ:

*Բ. ՌՈՒԼԸՆ*
*գագնեա*

# ԱՖՐԻԿՅԱՆ ՌՆԳԵՂՋՅՈՒՐ



Կենդանաբանները աֆրիկյան ռնգեղջյուրների երկու տեսակ են տարբերում՝ սպիտակ և սև։ Բայց գույնն այստեղ ոչինչ չի նշանակում։ Թե՛ մեկի և թե՛ մյուսի մորթը մոխրագույն է։ Իսկ գուներանգները կախված են թե ինչ կեղտաջրի մեջ են նրանք «լողացել»։ Սակայն կենսաձևով այդ ռնգեղջյուրները միմյանցից տարբերվում են։ Սևը՝ համեմատաբար փոքր է սպիտակից, չնայած դարձյալ ահռելի չափսեր ունի՝ կշռում է մոտ երկու տոննա։

Սև ռնգեղջյուրի հիմնական տարբերությունը սպիտակից վերին շրթունքի կառուցվածքի մեջ է. այն քիչ առաջ է ընկած և կախվում է ներքևի շրթունքի վրա։ Սև ռնգեղջյուրը սնվում է ճյուղերով ու տերևներով և ոչ թե սպիտակի նման խոտ է ուտում։

Եթե սպիտակ ռնգեղջյուրն, ընդհանուր առմամբ, անվնաս կենդանի է, ապա սևը շատ անհավասարակշիռ խառնվածք ունի։ Նրանից ամեն բան կարելի է սպասել. դրան էլ ավելացրած, որ նա իր սպիտակ եղբորից շատ ավելի արագավազ ու ճարպիկ է։ Սև ռնգեղջյուրները մենակ են ապրում կամ երկուսով և այնքան են կապված իրենց ապրած տեղին, որ չեն լքում այն մինչև կյանքի վերջը, եթե նույնիսկ մահ կամ կործանում է սպառնում երաշտից, իսկ ընդամենը մի քանի կիլոմետրի վրա փթթում է կանաչը։

Սև ռնգեղջյուրն այնքան էլ հազվադեպ հանդիպող կենդանիներից չէ, ինչպես նրա մյուս ազգակիցները։

---

*ՍՈՂՈՄՈՆ ՄԿՐՏՉՅԱՆ*

# ՀԱՆԵԼՈՒԿՆԵՐ

* * *

Ի՞նչ հնձվոր է, ամեն օր
Գնում է հնձի,
Բայց այն, ինչ որ հնձում է,
Ոչ ոքի պետք չի։

(մվիտումո՞)

* * *

Ինչքան բարձրանա՝
Կլայնանա,
Ինչքան մոտենա՝
Կնեղանա։

(Աջահվլայ)

* * *

Եղբայրներ են հասակակից,
Իրար սիրող ու կարեկից.
Մեկը վարպետ է գովական,
Իսկ մյուսը՝ միշտ օգնական։

(Սմգժագջ պտոք ղ Յղ)

* * *

Կա ու չկա
Հեքիաթային մի աշխարհ,
Ուր հասնելն ու
Հեռանալն է անհնար։

(բոմվլը)

* * *

Ոչ գնացք է, ոչ՝ ինքնաթիռ,
Ո՛չ թռնատար մի կենդանի.
Ինքը տեղում անշարժ է միշտ,
Բայց ուր ուզես՝ քեզ կտանի։

(ցմտոտոյոք)


Լույս է տեսնում 1923 թվականից



ՊԻՈՆԵՐ 7. 1979 Թ.

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ


## ԱՅՍ ՀԱՄԱՐՈՒՄ



Շապիկի առաջին էջը՝ ԱՐԹՈՒՐ ՍՄԲԱՏՅԱՆԻ, 14 տ., Երևան


Գլխավոր խմբագիր՝ ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

Խմբագրական կոլեգիա՝

ԱՂԱՆՅԱՆ Վ., ԲԱՐԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ. (պատ. քարտուղար), ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԳԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՁՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՊԵՏՐՈՍՅԱՆ Թ., ՍԻՐԱԿՅԱՆ Հ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ. (գեղ. խմբագիր)։

«Пионер» на армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, №15.

Հասցեն՝ 375015, Երևան—15, Կարմիր բանակի փողոց, № 15։ Հեռախոսներ՝ 56—92—72, 58—06—86, 56—14—96։

ՎՖ 03071։ Պատվեր 1224։ Տպաքանակ 51500։ Տպ. 3 մամ.։
Հանձնված է արտադրության 16/V 1979 թ.։
Ստորագրված է տպագրության 20/VI 1979 թ.։

ՀՍՍՀ Մինիստրների խորհրդի հրատարակչությունների, պոլիգրաֆիայի և գրքի առևտրի գործերի պետական կոմիտեի Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ, Երևան—9, Տերյան փ. № 91։



ԳԱԳԻԿ ԱՆԴՐԵԱՍՅԱՆ, 12 տ., Ուրծաձոր



ԶԱՐՈՒՀԻ ՍԱՀԱԿՅԱՆ, 10 տ.,
ք. Սևան



ԿԱՐԵՆ ՋԱՆՅԱՆ, 11 տ., Երևան



ԱՐՏՅՈՄ ՔԱՆԴԻԼՅԱՆ, 11 տ.,
ք. Լենինական



ԳՐԻԳՈՐ ԴԱԼԼԱՔՅԱՆ, 10 տ.
Ազրբ. ՍՍՀ, գ. Ղուշչի



ՄԱԿԻՋ ԹՈՒՄԱՆՅԱՆ, Քաջարանի գեղարվեստի դպր., 4-րդ դաս.





ԳԱՅԱՆԵ [illegible]ՐԻՆՅԱՆ, 12 տ.
Արարատի շրջ., գ. Արմաշ



ՆԱՐԻՆԵ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ, 10 տ.
Եղեգնաձորի շրջ., գ. Խաչիկ



ՆԱԻՐԱ ՏԻԳՐԱՆՅԱՆ, 10 տ., Երևան



ԳԱԳԻԿ ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ, 13 տ.,
Հոկտեմբերյանի շրջ., գ. Մրգաշատ